Լուսանկար՝ ԶԱՎԵՆ ԽԵՏԻԿՅԱՆԻ

# ՈՒՍՈՒՑՉՈՒՀԻՆ

ԷԴՎԱՐԴ ՄԻԼԻՏՈՆՅԱՆ

... Եվ այնպես էր թվում,
Թե ուսուցչուհին
Երկնքից է իջել,
Հեքիաթներից եկել,
Ճերմակ մազերով,
Կավիճը՝ ձեռքին:

Իսկ նա մի կին էր,
Արվարձանում ապրող,
Ուներ երեխա,
Թոռնիկներ ուներ,
Եվ զայրանում էր,
Հոգնում էր, տխրում,
Ասում էր օրոր, գնում էր շուկա,
Ինչպես տատիկն իմ,
Ինչպես տատը քո:

Իսկ մեզ թվում էր,
Թվում էր առաջ,
Թե ուսուցչուհին
Երկնից է իջել,
Հեքիաթից եկել,
Ժպիտը դեմքին,
Մազերը ճերմակ:
Ու մեզ թվում էր,
Կավճի փոշին է
Մազերին իջել:



# Վարժուհիներն իմ սիրելի

(ՄԱՆԿՈՒԹՅԱՆ ՀԻՇՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԻՑ)

ՎԵՐԱ ՊԱՆՈՎԱ

Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Հայրենական Մեծ պատերազմի օրերին Վոլոգդայի մարզում մեծացած մի պատկառելի սպա պատմել է ինձ, որ այդ մարզի մի քանի գյուղերում մինչև այժմ էլ դեռ ապրում է «վարժապետ» հրաշալի հին բառը այժմյան «ուսուցիչ» բառի փոխարեն: Խոստովանում եմ, որ այդ երկուսից ինձ «վարժապետն» ավելի է դուր գալիս: Այն նշանակում է մարդ, որը ոչ միայն գիտելիքներ է տալիս, այլև «վարժում» է, այսինքն՝ դաստիարակում, կյանք մտցնում, զարգացնում է աշակերտի բնավորության լավ գծերը, աճեցնում է սեր լավի և ատելություն՝ վատի նկատմամբ:

Այդ տեսակետից ինձ վիճակվեց չտեսնված բախտ իմ մանկության ու պատանեկության տարիներին: Ես ունեցա երևելի վարժուհիներ:

Դրանց թվում էին ոչ միայն ինձ հետ դասագրքով պարապող ուսուցիչները, այլև իմ պառավ դայակը՝ Մարիա Ալեքսեևնան և խելացի ու համակրելի գրադարանավարուհի Աննա Իվանովնան, որն ուղղություն էր տալիս իմ ընթերցանությանը: Բայց այս ակնարկում ես ուզում եմ պատմել իմ երկու ամենասիրելի վարժուհիների մասին:

Մենք շատ աղքատ էինք: Հայրս, որ բանկի ծառայող էր, խեղդվել էր Դոն գետում, երբ ես ընդամենը հինգ, իսկ եղբայրս մեկ տարեկան էր, և մայրս՝ գրասենյակային մի ծառայող, ինքն էր մեզ ոտքի կանգնեցրել: Այդ տարիներին մշտական կարիքը մեր անբաժան ուղեկիցն էր: Մեր տանը շարունակ խոսվում էր, թե որտեղից կարելի է փող ճարել եղբորս և ինձ համար կոշիկ, կամ քարածուխ (Դոնի Ռոստովում վառարանները վառում էին ոչ թե փայտով, այլ քարածխով, իսկ փայտի ծղանով վառվում էին միայն ինքնաեռները), կամ մայրիկի համար վերարկու գնելու, կամ դայակի պարտքը տալու համար:

Կարդալ ես ինքս եմ սովորել, աննկատելիորեն, թերթելով այն գրքերը, որոնց տառերն ավելի խոշոր էին և տառանկար խորանարդիկներից բառեր կազմելով (չգիտես ինչու, խորանարդիկներն անպայման հատակին էի դասավորում և ոչ թե սեղանին, այդպես ավելի հարմար էր թվում: Այդ սովորությունն, իմիջիայլոց, երկար պահպանվեց, մրդեն գրող դարձած ժամանակ ես սիրում էի ուղղել իմ վեպերը, ձեռագրի թերթերը հատակին փռած):

Այսպես, կարդալ ես ինքս էի սովորել, գրել՝ մայրիկն ու տատիկն էին սովորեցրել, իսկ հետո սովորեցնող չկար, գիմնազիայի նախապատրաստական դասարանն էլ ընդունում էին ոչ շուտ տասնմեկ, ծայրահեղ դեպքում տասը տարեկանից, իսկ տնային ուսուցիչներ հրավիրելու համար միջոցներ չունեինք: Եվ հանկարծ մի օր մեր տուն եկավ մի ծանոթ, հանգուցյալ հորս գործընկեր ու բարեկամ Արկադի Իվանովիչ Պրոզորովսկին և ասաց.

— Մայրիկս՝ Աննա Ֆադեևնան զրուցել է ձեր Վերոչկայի հետ և ցանկություն է հայտնում նրա հետ պարապել: Թող Վերոչկան առավոտները գա նրա մոտ:

Տեղնուտեղն էլ նա ակնարկեց, որ դասերն անվճար են լինելու, և իմ խեղճ մայրը շատ ուրախացավ:

Ես ու եղբայրս այդ Պրոզորովսկիների մոտ մի քանի անգամ եղել էինք տոնածառի հանդեսին, ուրիշ ոչ մի տեղ, բացի այդ մանկական հանդեսներից, չէր կարող Աննա Ֆադեևնան ինձ հետ զրուցել, իսկ ես չէի հիշում այդպիսի զրույց և չէի էլ կարող պատկերացնել, թե ինչի մասին կարող էր զրուցել ութնամյա մի աղջնակի հետ այն սև ժանեկազարդ գլխանոցով ալեհեր պատկառելի ծեր կինը, որը ճաշասենյակում գավաթներ էր դասավորում սեղանին և որի մասին երեխաներից մեկն ասաց, որ նա Արկադի Իվանովիչի մայրիկն է:

Եվ ահա ես օրերից մի օր գնացի նրա մոտ:

Հիշում եմ, նրանք ապրում էին Տասնհինգերորդ գծի վրա, իսկ մենք՝ Առաջին: Դա բավական հեռու էր, ես էլ մենակ էի գնում և վախենում էի տունը շփոթել, որովհետև մոռացել էի մինչ այդ միայն երեկոյան լուսավորության մեջ տեսած տան տեսքը, բայց գտա իսկույն, և այն առավոտից հիշում եմ նախամուտքի տրորված ձյունով ծածկված քարե աստիճանները, լուսամուտների կաթնագույն վարագույրներն ու դուռը՝ երրորդ հարկում:

Դուռը բացեց ինքը՝ Աննա Ֆադեևնան: Ժպտաց ու ասաց.

— Ա՜, Վերոչկա, մտի՛ր, ես քեզ եմ սպասում:— Նա նույն սև ժանեկազարդ գլխանոցով էր, բայց ուրիշ կերպ էր հագնված. սև շրջազգեստ ու ազատ թողած բումազեի բլուզ, ինչպես հագնում էր մեր դայակը: Նա ինձ տարավ մի փոքրիկ սենյակ, որ ես առաջ չէի նկատել այդ ընդարձակ բնակարանում: Դուռը բացվելուն պես, խորքի ձախ անկյան ու լուսամուտի խայտաբղետ գույներն ինձ շլացրին. Պատուհանի գոգին բազմաթիվ մեծ ու փոքր ծաղկամաններ էին դրված բացված սենյակային ծաղիկներով, իսկ անկյունը ցանցի նման հյուսված էր գունավոր թղթերից, մետաքսից, թավշից ու հասարակ



քաթանից վարպետորեն պատրաստված արհեստական ծաղկաշարերով:

Ինչպես ամեն մի աղջնակ, ես հիացել էի այս տեսարանով: Ծաղիկներից բացի, սենյակում կար մի մահճակալ՝ բարձր ձյունաթույր բարձերով, գրենական պիտույքներով սեղան, սեղանի առջև՝ մի մեծ, շատ սիրուն և, ըստ երևույթին, շատ հարմար կարմիր կտորապատ բազկաթոռ:

— Ահա այստեղ եմ ես ապրում,— ասաց Աննա Ֆադեևնան,— առոք-փառոք, որդուս ու հարսիս թևի թակ:

Նա նստեց բազկաթոռին, իսկ ես նրա ձախ կողմում՝ աթոռին:

— Ինչի՞ց սկսենք,— հարցրեց նա:— Ասում են, դու գիրք կարդալ ես սիրում, ուրեմն արի կարդանք: Բայց նախ, արի մի թելադրություն գրենք:

Մորս խորհրդով ես հետս բերել էի տետրեր, իսկ գրչածայրով գրիչ տվեց ինձ Աննա Ֆադեևնան: Եվ ահա ինչպիսի տարօրինակ բաներ նա ինձ թելադրեց.

«Հոսում է լեռան ստորոտով
գետ, ստորակետ,
Ափին այդ գետի
(Կարիք չկա հիմա
ստորակետի)
Կանգնել է տերտերը անգետ.
Վերջակետ:
Է հեյ (բացականչական)
գալիս է իշխանը հերոսական
Եվ հարցնում տերտերից
անգետ, կետ.
— Ճիշտ չէ՞ (հարցական) ես եմ հերոսական:
Իսկ իմ հայրը ինձնից—գիծ:
Եվ գնաց (բացականչական) իշխանը հերոսական:
Եվ կլանքում տերտերը անգետ..
Կետ, կետ, կետ...»

Թերևս, ընթերցողն ինձ չհավատա, բայց հայտնի չէ, թե ինչու այս ոտանավորանման բարբաջանքի մեջ ես իսկույն հասկացա նրա ուսուցողական նշանակությունը և այն օրվանից ճիշտ տեղում եմ դնում բոլոր կետերը, ստորակետերը, վերջակետերն ու բազմակետերը: Իսկ թե ինչպե՞ս եղավ այդ—գաղափար չունեմ: Գուցե դա հին ժամանակների ինչ-որ մանկավարժական փո՞րձ էր:

Թելադրությունն ավարտելով, Աննա Ֆադեևնան գրադարանից մի հաստ գիրք հանեց և բացելով դրեց իմ առջև.

— Բարձրաձայն կարդա՛:

Դա Գոնչարովի «Պալլադա» ֆրեգատ» ստեղծագործությունն էր:

Աննա Ֆադեևնան ուշադիր լսում էր ինձ ու ամեն րոպե ուղղում, որպեսզի ճշտի առոգանությունս, հատկապես օտար բառերի արտասանությունը, կամ բացատրի բառերի նշանակությունը և կամ ուղղակի ուղղի շեշտը: Դրանից հետո մենք իսկույն ընկրսեցինք աշխարհագրություն պարապել: Ես իմացա, թե ինչ է կղզին ու թերակղզին, լայնություն և երկայնություն, իմացա քամիների անունները, և ինչպիսի նավեր են լինում, և ինչով է տարբերվում օվկիանոսը լճից: Մայր ցամաքների, ծովերի, կղզիների, քաղաքների հսկայական քանակությամբ հատուկ անուններ մնացին հիշողությանս մեջ այդ գրքի ընթերցանությունից հետո, որ այն ժամանակ այդպիսի գրականություն կարդալու փորձ չունենալու պատճառով թվում էր շատ ձանձրալի: Ինչ որ մենք շատ երկար էինք կարդում, հաճախ ինձ սրտնեղում էր, բայց Աննա Ֆադեևնան անողոքաբար ասում էր.

— Ի՞նչ է նշանակում ձանձրալի է, չեմ հասկանում: Եթե պետք է կարդալ—ուրեմն պետք է: Ա՛յ, կըվերջացնենք այս գիրքը, այն ժամանակ մի հետաքրքիր բան կվերցնենք:

«Հետաքրքիր բանը» եղավ Զագոսկինի «Ասկոլդի գերեզմանը»: Հետագայում ես քանիցս փորձել եմ նորից կարդալ այդ գիրքը: Եվ ամեն անգամ չեմ կարողացել մինչև վերջ հաղթահարել, այնքան թըմբած, սակավարյուն, փքված ու էժանագին է ամեն ինչ այնտեղ: Իսկ Աննա Ֆադեևնայի հետ կարդում էի խսկապես հափշտակված: Որովհետև դրան զուգընթաց նա պատմում էր հին Ռուսաստանի, Օլեգի, Իգորի, Օլգայի, Սվյատոսլավի, Վլադիմիրի մասին: Պատմությունները զուգորդվում էին բիլինաներին ու բանաստեղծություններին:

Մի անգամ, Օլեգի մասին խոսելիս, նա վերցրեց գրադարակից Պուշկինի մի հատորը և ինչ-որ նոր, ինձ անծանոթ ձևով կարդաց «Օլեգի երգը»: Այսպես մենք մոտեցանք պատմության ուսումնասիրությանը: Ե՛վ «Կապիտանի աղջիկը», և՛ «Քեռի Թոմասի տնակը», և՛ «Արքայազնն ու աղքատը» մենք կարդացինք, ինչպես ասում են, այդ անկյան տակ, և ինձ հայտնի դարձավ, որ ճշգրիտ փաստը, մարդկանց իրական գործերը, այսինքն պատմությունը, անհամեմատ ա-



վելի հետաքրքիր են, քան Մայն-Ռիդի բոլոր ձիավորներն ու Չարսկայայի[1] զգացումնային աղջիկները:

Նույնիսկ Չարսկայայից իմ վարժուհին կարողանում էր ինձ համար արժեքավոր բան քաղել: Այսպես, օրինակ, «Ջավախքի իշխանուհուց» ես սովորեցի վրացերեն մի քանի բառեր ու դարձվածքներ, «Սիբիրուհուց» ես իմացա, որ կան վայրի գազաններ վարժեցնողներ, «Քույր Մարինայից» իմացա, որ կան սոսկալի հիվանդությունների համաճարակներ, և որ այդ համաճարակների դեմ պայքարում են բժիշկները:

Հորս մահվան տարին (1910) Ռոստովում խոլերա էր, որից զոհվեցին մեր ծանոթներից և նույնիսկ ընտանիքից մի քանիսը: Ես կողք-կողքի բերելով անցած համաճարակի իրադարձություններն ու իմ նոր գիտելիքները, հիշում եմ, սոսկալի հարգանքով լցվեցի բժշկական կուրսերի մեր մի ծանոթ ուսանողուհու՝ Մարուսկայի նկատմամբ, որովհետև նա բժիշկ էր դառնալու: Իսկ մինչ այդ սիրունատես Մարուսկան ինձ համար ընդամենը մի օրիորդ էր, ինչպես բոլոր մյուսները: Հապա ինչե՞ր էի ես հորինում, հատկապես գիշերները, համաճարակի, խոլերայի, ժանտախտի թեմաներով: Եվ որքան հասկանալի էր ինձ իր գլխավոր փիլիսոփայական կողմով այն օրերին առաջին անգամ կարդացածս Պուշկինի «Խրախճանք ժանտախտի ժամանակ» ստեղծագործությունը: Ի միջի այլոց ասեմ, որ անհասկանալի ու ողբերգական «Վալսինգամ» ցնցող անունը գերել էր ինձ այն ժամանակ ու թվում էր շլացուցիչ գեղեցիկ, ցնորական ու սպառնացող, և որքան ուրախացա ես, երբ շատ տարիներ անց իմ պաշտելի Մարինա Իվանովնա Ցվետաևայի «Իմ Պուշկինից» իմացա, որ նրան էլ մանկության օրերին այդ անունը հոյակապ է թվացել:

Այն հագուստը, որով Աննա Ֆադեևնան ինձ դիմավորեց, նրա ամենօրյա սովորական հագուստն էր. շրջազգեստ և ազատ թողած բլուզ: Տոնական օրերին նա հագնում էր մուգ գույնի պարզ շոր՝ ժանեկազարդ փողկապով: Դրա հետ մեկտեղ նա կրում էր ոսկյա համեստ զարդեր. խարսխանման մի ճարմանդ ու բարակ շղթայով մեդալիոն: Մեդալիոնի վրա փորագրված էին նրա անվան առաջին տառերը՝ ԱՊ— Աննա Պրոզորովսկայա, իսկ մեջը՝ հանգուցյալ մոր փոքրիկ պատկերն էր: Եվ անփոփոխ՝ առօրյա թե տոնական օրերին սև գլխանոց արծաթափայլ մազերին:

Եվ այդ բոլորը այնքան վայելուչ ու գեղեցիկ, որ նա ինձ միշտ թվում էր հիանալի հագնված, և նույնիսկ ոսկով կարկատանված ատամները չէին փչացնում ու չէին ծերացնում նրա գունատ խորշոմած դեմքը:

Բայց մի անգամ ես ուշադիր դիտեցի այդ բարակ, թեթև մարմնիկը և վշտով նկատեցի, որ նա կորացել է, ավելին՝ կզացել: Կորանալով, նա տգեղացել էր ու շատ փոքրացել: Բայց դա տևեց մեկ րոպեից ոչ ավելի: Հանկարծ Աննա Ֆադեևնան, կարծես իր մեջքին զգալով զննող հայացքս, ձեռքերը ծալեց կրծքին, ձախ ձեռքի ափը ծածկելով աջ ձեռքի ափով, կարծես ցնցվեց ներքուստ ու զսպանակի պես վարկենապես ուղղվեց, վերադարձավ իր սովորական միջին հասակին:

Այդ ժամանակ ես արդեն վարժվել էի նրան ու առանց քաշվելու անթիվ-անհամար հարցեր էի տալիս: Ես նրան հարցրի.

— Այդ ի՞նչ է, Ա՛ննա Ֆադեևնա, առաջ այդպե՞ս էին ծալում ձեռքերը.

— Հապա ինչպե՞ս,— պատասխանեց նա:— Մեր մայրը փոքրուց սովորեցրել է մեզ ձեռքերն այսպես պահել: Նախ՝ չի ծովում ողնաշարը, ուրեմն, առողջարար է: Երկրորդ՝ աղջիկը մեջքը չի կորացնում, ուրեմն, գեղեցիկ է: Երրորդ՝ ձեռքերը անիմաստ կախված չեն, ուրեմն և վայելուչ է: Իմ բոլոր ընկերուհիներն այդպես էին քայլում:

Հետագայում, երբ ես գիմնազիա ընդունվեցի, այնտեղ էլ աղջիկներին սովորեցնում էին ձեռքերը տուփիկի պես պահել, և մենք չէինք կորացնում մեր

[1] Չարսկայան, որը գրում էր զգացմունքային գրքեր, մեծ քանակությամբ հերոսի ու անհավանական արկածներով, իմ մանկության ժամանակների հանրահայտ մանկական գրող էր:

մեջքներն ու չէինք հոգնում դասասեղանի մոտ երկար նստելուց:

Չգիտեմ, արդյոք այդպե՞ս են ուրիշ երեխաները, թե ոչ, բայց մանուկ հասակում որպեսզի ես սիրեի որևէ մեկին, պետք էր, որ ես նրա հոգևոր ու մտավոր կարողություններից բացի, հիանայի նաև նրա կերպարանքով ու հասարակության մեջ իրեն պահելու ձիրքով: Այդ իմաստով Աննա Ֆադեևնան, ալեհեր մազերով ու գլխանոցով մի ծեր կին, դարձավ իմ իդեալը: Ես ուզում էի լինել միշտ նրա նման հստակ, բարեձև ու ձիգ: Ես ընդօրինակում էի նրա քայլվածքը, վարվելակերպն ու խոսելաձևը: Կարծում եմ, որ այն մայրերն ու տատիկները, որոնք թույլ են տալիս իրենց երեխաների ու թոռների մոտ լինել անփույթ սանրված և անմաքուր հագնված, սխալ են վարվում. Հիշում եմ, որ այդ մասին մի տեղ գրել է Մակարենկոն: Երեխաներին պետք չէ, որ իրենց մայրերը շքեղ հագնված լինեն, բայց նրանց համար անհրաժեշտ է, որ մոր կերպարանքը դուր գա իրենց: Իսկ դրան կարելի է հասնել մաքրասիրությամբ ու բարեձևությամբ:

Մի բանով էլ էր հիացնում ինձ Աննա Ֆադեևնան:

Մի անգամ ես նրան հարցրի.

— Ո՞վ է սարքել ձեզ համար այս ծաղիկները,— նկատի ունենալով արհեստական ծաղիկները:

— Ես ինքս,— պատասխանեց նա:— Ինձ Վասյա Պետրովն է սովորեցրել:

Վասյա Պետրովի մասին ես նրանից հաճախ էի լսում: Նա գիմնազիստ էր, որին Աննա Ֆադեևնան օգնում էր դասերը պատրաստել և շատ սիրում էր: Այդ ծաղիկներն ինձ արվեստի այնպիսի գլուխ-գործոցներ էին թվում, որ ես նույնիսկ չհավատացի: Բայց մի անգամ դասի ժամանակ Աննա Ֆադեևնան սեղանին դրեց գույնզգույն շորի կտորներով, գունավոր թղթերով ու մետաղալարի կտորտանքով լի մի արկղիկ և իմ ներկայությամբ նախ մի վարդ սարքեց, հետո էլ՝ տերեփուկ: Եվ ես համոզվեցի, որ նրա սենյակի ետևի ձախ անկյան արդուզարդը ամբողջապես իր ձեռքի գործն է:

Եվ մի՞թե միայն ծաղիկները: Նա շարունակ մի բան կարում էր, գուլպա էր կարկատում, ձևում էր: Մեկ տեսնում ես օսլայում ու արդուկում է իր ժանեկազարդ օձիքները, մեկ նամակներ գրում, մեկ էլ հուշեր: Մեկ էլ հայտարարում է, որ այսօր որոշել է մազերը լվանալ մի հատուկ ձևով՝ ձվի դեղնուցով, և սկսում է զնգզնգացնել թասերը լողասենյակում, պատրաստվելով իրագործել ասածը:

Որդուց նա ընդունում էր ապաստան և սնունդ, իսկ իրեն ինքն էր սպասարկում: Եվ ի՞նչ հանգստի մասին կարող էր խոսք լինել, եթե նա մեկ ինձ էր դաս տալիս, մեկ գնում էր իր հետ մնացող գիմնազիստների մոտ, մեկ էլ ասեղն էր ձեռքն առնում կամ արդուկը: Եվ ինձ դուր էր գալիս, որ նրա շուրջը մշտապես մի բան էր կատարվում. կար անող էր գալիս փորձելու նոր բլուզը, թոռնիկը՝ Կոտիկն էր ներս վազում, խնդրելով, որ իր համար գիրք կարդա, խոհարարուհին էր գալիս՝ հարցնելու, թե ինչպես պետք է պատրաստել այս կամ այն կերակուրը, գալիս էին և որդու՝ Արկադի Իվանովիչի գործընկերները՝ շնորհավորելու սիրելի Ֆադեևնային նրա ծննդյան տարեդարձի առթիվ:

Մենք սիրեցինք իրար: Սիրելով նրան այնպես, ինչպես ես էի սիրում, ուրախալի էր գիտակցել, որ նա էլ ինձ է սիրում (ես դրանում համոզված էի) և հարգում: Եվ չկար մի դաս, որից ես չգնայի այն զգացումով, որ այսօր էլ ինձ շնորհված է մի բան, որից ես զուրկ էի երեկ:

Ինձ թվում էր, թե միշտ էլ այդպես կլինի. ես շարունակ կգամ նրա մոտ ու կստանամ այդ շնորհները: Բայց հանկարծ մի առավոտ ես սեղմում եմ երրորդ հարկի ծանոթ դռան զանգի կոճակը, դուրս է գալիս սպասուհին և ասում.

— Հանկարծամահ է եղել մեր Աննա Ֆադեևնան.

Ես նետվեցի նրա սենյակը, չգիտես ինչու կարծելով, թե նա մեռած պառկած է իր ուռած բարձերով մահճակալին: Բայց այնտեղ միայն դատարկ բազկաթոռն էր դատարկ սեղանի առջև:

Հետևյալ առավոտյան իմ հյուսերին սև ժապավեններ կապեցին, և մենք երեքով՝ ես, մայրիկն ու տատիկը, գնացինք Պրոզորովսկիների տուն:

Աննա Ֆադեևնան պառկած էր ճաշասենյակում, սեղանի վրա, հագած ինձ ծանոթ մուգ-դարչնագույն շորը: Ծանոթ ժանեկազարդ փողկապը ամրացված էր խարսխաձև ծանոթ ճարմանդով: Սեղանի վրա կախված լամպի լույսի տակ արծաթին էին տալիս նրա փափուկ ու նուրբ մազերը: Մանր կնճիռներով ծածկված փոքրիկ դեղնավուն ձեռքերը խաչված էին կրծքին: Այս բոլորն ինձ համար այնքան թանկ էին, որ ես չգիտեի, թե առանց սրանց ինչպե՞ս պետք է ապրեմ և այժմ որքան անճանաչելիորեն պետք է փոխվեն իմ օրերը:

Տատիկը մոտեցավ սեղանին և համբուրեց հանգուցյալի ճակատը: Մոտեցավ և մայրիկը ու համբուրեց ամուսնական մատանի կրող դեղին ձեռքը: Համբուրեցի այդ ձեռքը նաև ես: Այն սառն էր, ինչպես աշխարհում ոչ մի բան սառը չի լինում. մտածեցի ես, ո՛չ ձյան փաթիլը և ո՛չ էլ նույնիսկ սառցալուլան:

Ձեռքի եղունգները կապույտ էին: Եվ իմ հոգին ճչաց ամբողջ ձայնով. «Ախր ինչո՞ւ, և ինչի՞ համար է այսպես աշխարհում»:

Մոտեցան գիմնազիական համազգեստ հագած տղաներ՝ հավանաբար նրա աշակերտները: Երևի նրանց մեջ էր և Վասյա Պետրովը: Եվ ես գիտեի, որ

*Նրանց հոգիներն էլ նույն բառերն էին ճչում: Եվ նույնն էին ճչում նրանք գերեզմանատան սև փոսի առջև: Եվ այն ժամանակ, երբ ոսկեկար փարաջայով քահանան հոգեհանգիստ մատուցեց: Եվ աղմուկով, դագաղի կափարիչին զարնվելով, դեպի գերեզման սկսեցին նետվել խոնավ հողի կոշտուկներ:*

*Ես կարծում էի, թե մենք հիմա տուն կգնանք: Բայց բոլորը նորից եկան Պրոզորովսկիների մոտ: Այն սեղանին, ուր մեկ ժամ առաջ մենք հրաժեշտ էինք տալիս Աննա Ֆադեևնային, ափսեներ ու շշեր էին շարված: Խոհանոցից շարունակ բերում էին ու բերում բլինների բարձր խրձեր: Ողջ բնակարանը հագեցած էր բլինների տաք բուրմունքով: Եվ ես էլ էի գինի խմում, գոհ, որ մեզ՝ երեխաներիս էլ են գինի տվել, և բերան այրող բլիններ էի ուտում: Բայց, թեև անհարմար էր սեղանից վեր կենալը, չդիմացա և նորից վազեցի փոքրիկ սենյակը, ուր խորդենու ու վալերիանի կաթիլների ծանոթ հոտն էր կանգնած և միայն դատարկ բազկաթոռն էր դատարկ սեղանի առաջ:*

*Աննա Ֆադեևնայից հետո ինձ դասավանդում էր մի ոմն Եվգենյա Ստանիսլավովնա, տարեց մի կին՝ բարի ու փափուկ բնավորությամբ, բայց միանգամայն անդեմ ու զուրկ հոգևոր աշխարհից: Ոչ մի հատկությամբ սա չէր հիշեցնում իմ հանգուցյալ վարժուհուն: Այն էլ պետք է ասել, որ ծանր, անուրախ էր նրա կյանքն ու հայտնի չէ, թե որտեղից կարող էր կուտակեր մի հարստություն, որպեսզի հետագայում ուրախությամբ հաղորդակից աներ ուրիշներին: Միայնակ, ուժից վեր աշխատանքից ու կարիքից դիմազրկված, այլևս ոչ մի հույս չունեցող մարդ: Նա ապրում էր մի ողորմելի խցիկում՝ իր չորս պաշտելի կատուների հետ, որոնք շատ ավելի առողջ, կուշտ և ուրախ տեսք ունեին, քան ինքը: Ես մի անգամ եղա նրա տանը և, որքան էլ որ սովոր էի աղքատության, սարսափեցի նրա տան տեսքից:*

*Եվգենյա Ստանիսլավովնան շատ աշակերտներ ուներ և աշխատում էր միայն սնունդ ստանալով. մեկի մոտ նախաճաշում էր, մեր տանը ճաշում էր, մի տեղ էլ՝ ընթրում: Հին ժամանակներում այդպես աշխատում էին գյուղական դերձակներն ու կոշկակարները՝ խրճիթից-խրճիթ անցնելով:*

*Այդպիսի թափառական կյանք վարելով, խեղճ Եվգենյա Ստանիսլավովնան այլևս ժամանակ չէր ունենում մտածելու իր առողջության, առավել ևս արտաքին տեսքի մասին:*

*Ինձ նա պատրաստում էր Լյուբիմովայի մասնավոր գիմնազիան ընդունվելու համար: Մենք ազնիվ կերպով անցնում էինք գիմնազիայի ծրագիրը, անցնում էինք դասագրքերով, մազաչափ անգամ չշեղվելով նրանցից, առանց մանկավարժական փորձերի, սերտելով սկզբից մինչև վերջ, մեկը մյուսի հետևից*



*վճռելով գրքի բոլոր խնդիրները, առանց այնպիսի փորձերի, որպիսին վեպերի ու բանաստեղծությունների կիրառումն է ուսման ընթացքում: Բայց սա այն բոլորն էր, որ կարող էր տալ Եվգենյա Ստանիսլավովնան, և ես հասկանում էի, որ սպասել նրանից ավելին—անմտություն և դաժանություն կլիներ:*

*Լյուբիմովայի գիմնազիայում սովորող իր աշա-*

կերտուհիներին Եվգենյա Ստանիսլավովնան հարցուփորձ էր անում այնտեղի կարգ ու կանոնի, ուսուցիչների մասին և այդ տեղեկությունները հաղորդում ինձ որպես խրատ: Նրանից ես իմացա, որ աշխարհագրության ուսուցչուհին՝ Ալեքսանդրա Ալեքսանդրովնան տարօրինակ մի կին է, բայց և շատ ուսյալ ու խելոք: Իսկ ավելի տարօրինակ է ռուսաց լեզվի ուսուցչուհին՝ Նինա Մատվեևնան, որը ոչ քերականություն է սովորեցնում, ոչ փոխադրություն հանձնարարում, միայն բանաստեղծություններ է տալիս աղջիկներին անգիր սովորելու և հետո դասարանում արտասանելու:

Դա ինձ դուր եկավ, և ես նախապես սպասում էի Նինա Մատվեևնայի հետ իմ հանդիպմանը արդեն իսկ հետաքրքրությամբ և նույնիսկ անհամբերությամբ: Ռուսաց լեզվի քննությունները ոչ թե նա էր ընդունում, այլ հայտնի չէ, թե ինչու, գիմնազիայի տնօրինուհին՝ Սոֆյա Յակովլևնա Լյուբիմովան, կրոնուսույց քահանայի հետ:

Նինա Մատվեևնային ես առաջին անգամ տեսա ռուսաց լեզվի առաջին դասին: Ներս մտավ թե չէ, տեսնեմ գրատախտակի մոտ աչք շլացնող, կարմրամազ և ուրախ ժպտացող ու պայծառ մեկն է:

Նա հագել էր դեղին ու դարչնագույն վանդականկար բլուզ, ուսերին կարմրամազ աղվես, գլխին էլ ոսկեգույն երանգով մի կարմրամազ կեղծամ՝ խոշոր խոպոպներով: Եվ նրա առաջին բառերն էին.

— Հապա, աղջիկնե՛ր, ձեզնից ո՞վ է մի լավ բանաստեղծություն սովորել ինձ համար:

Հիվանդագին տեսքով մի նիհար աղջիկ (հետո ես իմացա, որ նրա անունը Զինա Ստասենկովա է և որ նա դասարանի լավագույն աշակերտուհին է) ձեռք բարձրացրեց և գալով ամբիոնի մոտ, անգիր արտասանեց Ա. Կ. Տոլստոյի «Բաց վարդագույն հեռուներում հանգչում է վերջալույսը» բանաստեղծությունը: Նինա Մատվեևնան ասաց.

— Ապրե՜ս, Զի՛նա: Շատ լավ բանաստեղծություն է:

Մեկն էլ մի երկար բանաստեղծություն կարդաց Նադսոնի «Քրիստոնեուհին»: Այս բոլորն ինձ շատ դուր եկավ: Դասը համերգի էր նման, իսկ ես բանաստեղծություններ շատ էի սիրում:

Բայց ճիշտ չէր, թե Նինա Մատվեևնան սահմանափակվում է միայն բանաստեղծություններով: Թելադրություններ ու փոխադրություններ մենք գրում էինք համարյա ամեն օր, քերականությունն անգիր էինք անում, և Նինա Մատվեևնան նույնիսկ փորձում էր մեզ տնային շարադրության նման մի բան հանձնարարել: Եվ նույնիսկ այն ժամանակ, առաջին դասարանում, մեր աղջիկները կարդում և գրում էին անսխալ:

Իսկ ինձ Նինա Մատվեևնան մեծ սեր ներարկեց բանաստեղծության նկատմամբ: Սկզբում ես անգիր էի անում հիշողությանս և աշխատասիրությանս համար գովեստներ ստանալու նպատակով: Հետո սկսեցի տարված կարդալ գիշեր ու ցերեկ: Հետո սկսեցի ինքս գրել բանաստեղծություններ: Իհարկե, դրանք աղքնակի գրած հիմար բանաստեղծություններ էին, և, ճիշտն ասած, ամենևին տաղանդավոր չէին: Ես ամաչում էի, երբ նրանք ընկնում էին մեծերի ձեռքը, և թաքցնում էի կամ անկողնիս մեջ, զույգ ներքնակի միջև, կամ սպիտակեղենի տակ, կոմոդում: Իմ բանաստեղծություններում կային փերիներ, ձյան փաթիլներ, անմոռուկներ, գերեզմաններ, աղավնիներ, և ուրիշ այնպիսի ողորմելի աղբ, որ այժմ գռեհկություն են անվանում:

Ինձ արդարացնելու համար ասեմ, որ նման հիմարություններ գրելուն ես շատ շուտ վերջ տվի: Պոեզիայի իմացությունը ինձ գլխի գցեց, որ բանաստեղծություն պետք է գրել միայն շատ լավ, իսկ եթե չես կարող, բոլորովին մի՛ գրիր: Այդպես ավելի լավ կլինի թե՛ քեզ համար, թե՛ մարդկության:

Եվ այնուամենայնիվ, Նինա Մատվեևնային հաճախ է վերադառնում իմ շնորհակալ հիշողությունը: Մինչև օրս էլ ինձ դուր է գալիս կարմրավուն խոպոպներով ու վարդագույն այտերով այդ կենսախինդ կինը: Իսկ խոպոպներից ու վարդագույն այտերից ավելի ինձ դուր է գալիս նրա այդ ցանկությունը՝ մեզ, աղջնակներիս, ներարկել իր անձնական ճաշակն ու բաժանել մեզ հետ իր ուրախությունը: Քանի որ նա ոչ միայն լսում էր մեր արտասանությունը, նաև բացահայտորեն ուրախանում էր, լսելով բանաստեղծության երաժշտությունը, և սովորեցնում էր, թե ինչպես կարդալ այս կամ այն բանաստեղծությունը, որպեսզի ավելի լավ արտահայտվի նրա երաժշտական հմայքը: Եվ այդ ընթացքում աշակերտուհու հայացքը հանդիպում էր վարժուհու հայացքին և երկու զույգ աչքերում էլ փայլատակում էր գեղեցիկի վայելման ուրախությունն ու հմայվածությունը: Եվ ծագում էր այն մարդկային մտերմությունը, որից թանկ ոչինչ չկա: Վարժապետի ու նրա ղեկավարությամբ կյանք մտնող հասունացող մարդու մտերմությունը:

Թարգմ. ԼԻԼԻ ՏԵՐ-ՄԻՆԱՍՅԱՆԻ







## ԿՌՈՒՆԿՆԵՐԸ

*ԳԵՎՈՐԳ ԶԱՐԻՆՅ*

Կռունկները մի բացատում
Իջան տխուր, առանց երգի,
Լուսացրին գիշերն արթուն՝
Բոլորելով շուրջը մեկի:

Ի՞նչ խոսեցին, ի՞նչ ասացին,
Նրանց լեզուն չհասկացա...
Միայն տեսա՝ լուսաբացին
Տխուր կանչով երբ բարձրացան,
Մի վիրավոր կռունկ մնաց
Այն բացատի թավ կանաչում,
Թևերը կախ, աչքերը թաց,
Ընկերների կանչն ականջում:




## ՄՐՋՅՈՒՆՆԵՐԸ

*ՎԻԿՏՈՐ ՀՈՎՍԵՓՅԱՆ*

Ասում են, թե հին օրերում
Փղի չափ էր ամեն մրջյուն,
Տիրում էին լեռներ ու դաշտ,
Ապրում էին սիրով ու հաշտ...

Գազանները եկան մի օր
Հանգստվեցին արքայի մոտ.
— Ո՛վ տեր, եթե այսպես մնա,
Մենք կդառնանք ոտնագնա,
Ե՛տ առ սրանց կամ ուժը մեծ,
Կամ մի՛ թող հաշտ ապրեն այսպես...

Ժպտաց արքան, քունքը քորեց,
Մրջնարքային հրավիրեց
Ու բողոքն այդ տեղը-տեղին
Պատմեց արքան մեծ մրջյունին...
— Կամքը ձերն է,—
Պատասխանեց մեծ մրջյունը,—
Ես հրեցն եմ,
Բայց ոչ ցեղիս իմաստունը:
Գնամ հարցնեմ փոքր ու մեծին,
Համաձայնվենք,
Մեկնումեկից մենք անհապաղ
Կհրաժարվենք:

Ասաց, գնաց: Երեկոյան
Մրջյունները որոշեցին.
«Թող էտ առնի ուժ ու մարմին,
Բայց մեր սերը՝ երբեք, երբեք»:

Այդ օրվանից փոքրիկ դարձան,
Բայց հաշտության կրակով բարկ
Երջանիկ են ապրում նրանք
Երկնքի ու արևի տակ:

*Նկ. ԿԱՐԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ*







## ԱՅԳԻՆ

*ՅՈՒՐԻ ՍԱՀԱԿՅԱՆ*

Երբ այգին չկար—
Ոչինչ էլ չկար:
Չկար թիթեռ,
Չկար մեղու,
Չկար մրջյուն բազմաբեղուն,
Չկար երգող և ոչ մի հավք,
Չկար ստվեր,
Ու զով չկար:
Այս բոլորը եկան հետո,
Կամա՛ց-կամա՛ց,
Մեկի՛կ-մեկի՛կ,
Եվ նոր՝ այգին այգի դարձավ,
Եվ նոր՝ հողը դարձավ երկիր:





# Իսահակյան

(Ծննդյան 100-ամյակի առթիվ)

ՎԱՀԱԳՆ ԴԱՎԹՅԱՆ

Դեմքը ապնվական շուք ուներ: Մաշկի տակ ասես լույս կար, որ ցոլում էր մեղմ ու թաքուն: Աչքերը խոշոր էին, նշաձև, ու թախծոտ: Թախծոտ, երբ անգամ ժպտում էր, անգամ ծիծաղում:

Իմ տեսած ամենահմայիչ տղամարդկանցից էր:

Առաջին անգամ նրան 1938 թըվին եմ տեսել, Ծաղկաձորում:

Պիոներական ճամբարի հրապարակում խաղում էինք, երբ լըսեցինք «Իսահակյանն է գալիս»...

Անտառից էր գալիս: Հագին բաց գույնի գեղեցիկ կոստյում էր, գլխին՝ լայնեզր գլխարկ, ձեռքին՝ ձեռնափայտ, կողքից գնում էր մի մեծ, դարչնագույն շուն:

Անցնում էր նա դանդաղաքայլ, հանդիսավոր:

Մի քանի օր անց, մեզ հայտնեցին, որ ճամբարում հանդիպում է լինելու Ավետիք Իսահակյանի հետ: Մեջտեղ եկան Իսահակյանի գրքերը: Մի քանի օր անընդհատ ճամբարային սենյակներից, թփերի տակից Իսահակյանի բանաստեղծություններն էին հնչում, մեկը մանկական ձայնով «Արագածըն» էր փորձում.

**Դու, Արագա՛ծ, ալմաստ վահան**
**Կայծակեղեն թրերի...**

Մյուսը՝ «Ասպետի սերը».

**Լուսակերտ է ապարանքը**
**Թագմորի...**

Ինձ հանձնարարված էր արտասանել իմ սեփական բանաստեղծություններից:

Եկավ հանդիպման օրը: Ճամբարի հրապարակում մեծ շրջան կազմեցինք և սպասեցինք բանաստեղծի գալուն:

Եվ առա ընկեր Վիրապը՝ մեր ճամբարի պետը, թևանցուկ արած բերեց Իսահակյանին: Նա եկավ, նստեց շրջանի կենտրոնում դըրված աթոռին ու սկսեց կրուցել մեզ հետ: Ու ինձ պատեց վարմանքը. շատ էր «հասարակ» խոսում, դանդաղ, կմկմում էր ու կակազում... Մինչդեռ ես այլ, բոլորովին այլ բան էի սպասում, ես կարծում էի, թե նա գեղեցիկ, շըքեղ, մինչ այդ չլսված խոսքերի հեղեղ պիտի տեղար մեզ վրա...

Հիմա ես նրա ասածներից ոչինչ չեմ կարողանում մտաբերել. հիշողությանս մեջ է մնացել միայն նրա խոսքի անշտապ տոնը:

Հետո ընկեր Վիրապի պահանջով երեխաները սկսեցին հարցեր տալ Իսահակյանին: Այդ հարց ու պատասխանից էլ շատ քիչ բան եմ հիշում և հիշածս հետևյալն է. մի շատ ակտիվ պատանի, համարձակորեն առաջ եկավ, կգաստ կանգնեց ու ասաց.

— Ընկե՛ր Իսահակյան, պատմեցե՛ք, թե արտասահմանում կապիտալիստներն ինչպես էին ճընշում ձեզ...

Համոզված էի, այդ հարցը ամենևին տեղին չէ, ու այդ պատանու փոխարեն ինձ շատ անհարմար զգացի:

Իսահակյանը ժպտաց ու ասաց.

— Տղա՛ ջան, կապիտալիստները բանվորներուն կճնշեն, ինձի չէ, ինձի ինչո՞ւ պիտի ճնշեին...

Հարց տվող տղայի հիասթափությունը կատարյալ էր:

Սկսվեցին արտասանությունները, և ընկեր Վիրապը ձայն տվեց նաև ինձ՝ «մեր ճամբարի պատանի բանաստեղծին»...

Ես արտասանեցի մի փոքրիկ բանաստեղծություն.

**Ամպերը գանգուր**
**Հագան կարմիր քող,**
**Թաքնվեց հեռվում**
**Արփին ոսկեշող...** և այլն:

Երբ ավարտեցի, Իսահակյանը ձեռքի շարժումով ինձ կանչեց մոտը.

— Անունդ ինչպե՞ս էր...

— Վահագ...

— Վահագն, լավ անուն է... Գիտե՞ս, թե ով էր Վահագնը...

Բարեբախտաբար գիտեի, ասացի:

— Ապրիս: Ոտանավորդ էլ լավն էր... Ամպերը գանգուր... Լավ է, որ բնության մասին ես գրում, այդպես էլ շարունակե:

Իսահակյանի հետ իմ երկրորդ, իսկական ծանոթությունը տեղի ունեցավ ուղիղ մեկ տասնամյակ հետո, Սոչիում:

Երիտասարդ էի, հանգստի ոչ մի կարիք չունենալով, գնացել էի հանգստանալու:

Ուշ աշուն էր: Խաղաղ օր:

Անցնում էի «Կավկազսկայա ռիվերյա» առողջարանի մոտով, երբ ծովափնյա փոքրիկ բարձունքին դրված նստարանին տեսա մի ծանոթ կերպարանք: Իսահակյանն էր: Մենակ նստած, ձեռնափայտին հենված՝ ծովին էր նայում: Նայում անշարժ, ակնդետ:

Հագին ամառային մոխրագույն վերարկու էր, գլխին լայնեզր գըլխարկ:

Շուրջը լռություն էր, խաղաղություն:

Նստած էր նա, իսկ դիմացը, աշնանային նվաղ արևի տակ, ծըփում էր ծովը, ծփում սովորակա-

# Իսահակյանի հետ

նից մի փոքր ավելի հուզված:

Ներանձնացած էր Իսահակյանը, ինքնասույզ: Ես հեռվից դիտում էի նրան, և այնպես էր թըվում, թե շուրթերը աննկատելիորեն շարժվում են ու նա անձայն զրույց է անում ծովի հետ: Թվում էր, թե հենց նման մի պահի է հըղացել իր լավագույն բանաստեղծություններից մեկի տողերը.

**Ծո՛վ, ազգեր եկան և քո շառաչին**
**Խառնեցին իրենց երգերը չնչին:**
**Եվ հիմա նրանք հավիտյան լռել,**
**Անցել են անդարձ,**
**դարձել առասպել:**
**Բայց դու, անտարբեր,**
**երգում ես կրկին**
**Բյուր դարեր երգած քո**
**երգերը հին:**

Նայում էի այդպես, երբ հանկարծ կողքիս հայտնվեցին Շողիկ Սաֆյանն ու Գարեգին Սևունցը:

— Վարպետին ես նայո՞ւմ...

— Նայում եմ,— ասացի:

— Ինչո՞ւ չես մոտենում:

— Ծանոթ չեմ հետը:

Զարմացան:

— Գնանք, ծանոթացիր:

Իսահակյանն ասես զգաց, որ իրեն ենք մոտենում, բարձրացավ տեղից ու ընդառաջ եկավ մեզ:

Շողիկն ու Սևունցը ներկայացրին ինձ: Երբ անունս տվին, ասաց.

— Ինչպե՛ս չէ, կարդացել եմ, իրեն էլ ծանոթ եմ:

Զարմացա:

Ոչ, չէր ձևացնում: Հետագայում շատ առիթներ ունեցա համոզվելու, որ արտակարգ հիշողություն ունի:

Հարցրեց.

— Որտեղացի՞ ես:

Ասացի, որ հայրս էրզրումցի է, մայրս՝ արաբկիրցի:

— Ուրեմն էրզրումցի ես: Իմ պապերս էլ են այդ կողմերից:

Պայծառ, ոսկե աշուն: Երևանյան խաղաղ ու խարտյաշ օր:

Ես ու մանկության ընկեր Վարդան Խանդկադյանը, որ երգիչ էր, բարձրանում էինք Աբովյան փողոցով, երբ նկատեցինք, որ հեռվից իջնում է Իսահակյանը: Աբովյանի կիրակնօրյա բազմությունը ակնածանքով ճանապարհ էր տալիս նրան: Ոմանք կանգ էին առնում, գլխարկները հանում ու այդպես կանգնած մնում, մինչև նա կանցներ: Իսահակյանը թեթևակի գլխով էր անում ու իջնում, Չարենցի ասած, «Իր երազային տարտամ քայլով»:

Մոտեցանք, բարևեցինք:

— Ի՞նչ եք անում, տղանե՛ր...

— Ման ենք գալիս, Վարպե՛տ...

— Է՛, ձեր ման գալու ժամանակն է,— ու թախիծ լսվեց ձայնի մեջ:

— Վարպե՛տ,— ասացի,— այստեղ մի նոր, գեղեցիկ սրճարան է բացվել, չգնա՞նք մի-մի սուրճ խմենք...

— Երթանք, ինչո՞ւ չէ...

Մտանք սրճարան: Մատուցողներն անմիջապես ընդառաջ եկան ու առաջնորդեցին մի հարմարավետ տեղ:

Երբ նստեցինք, տեսա, որ բոլոր հայացքները մեր սեղանին են ուղղված:

Սուրճ բերին, ընտիր կոնյակ, որ երբ լցվում էր բյուրեղյա բաժակների մեջ, կանաչավուն ցոլք էր տալիս:

— Ինձ կոնյակ չլցնեք,— ասաց Վարպետը,— ամենևին չի կարելի:

Գիտեի: Չստիպեցի:

Ես ու Վարդանը խմեցինք իր կենացը, իսկ ինքը սկսեց ումպ-ումպ իր սուրճը խմել:

— Վարպե՛տ,— ասացի,— Վարդանը երգիչ է ու ձեր երգերը հրաշալի է երգում:

— Ինչպե՞ս...

Քիչ հետո կմկմալով ասաց.

— Վարդա՛ն, քթիդ տակ կամաց դնդնա՛...

Վարդանը սկսեց ցածր ձայնով երգել.

**Սև-մութ ամպեր ճակտիդ դիզված,**
**Դուման հագար, Ալագյազ...**

Երբ երգն ավարտվեց, Վարպետի աչքերում մի խոնավ թախիծ էր լողում:

— Վարդա՛ն, մի ուրի՞շ բան էլ դնդնա...

Վարդանն այս անգամ մի փոքր ավելի բարձր ձգեց «Քարավանը»...

**Օտա՛ր, ամայի՛ ճամփեքի վրա**
**Իմ քարավանս մեղմ կղողանջե.**
**Կանգնի՛ր, քարավանս, ինձի**
**կթվա,**
**Թե հայրենիքես ինձ մարդ**
**կկանչե...**

Մատուցողը մոտեցավ ու կոնյակի մի նոր շիշ դրեց սեղանին.

— Կողքի սեղանից հյուրասիրեցին:

Վարպետը ժպտաց, գլխի շարժումով շնորհակալություն հայտնեց կողքի սեղանին:

— Վարդա՛ն,—ասաց,— երգե՛:

Վարդանը երգեց.

**Սև աչերեն շա՛տ վախեցիր,**
**Էն մութ անձեր գիշեր է...**

Մատուցողը նորից մոտեցավ մեկ ու մի նոր շիշ դրեց սեղանին.

— Երգե՛, Վարդա՛ն, բա՛րձր երգե...

Ու Վարդանը երգեց, երգեց բարձր, ամբողջ ձայնով:

Նոր շշեր էին հայտնվում սեղանին, շարվում իրար մոտ...

Երբ դուրս եկանք Վարպետի տրամադրությունը շատ էր բարձր:

Վարպետի հետ առավել հաճախ հանդիպելու հնարավորություն ունեցա, երբ աշխատանքի անցա «Գրական թերթում»:

Համարյա ամեն օր մտնում էր խմբագրատուն: Խմբագրի սենյակում մի հնամաշ բազկաթոռ կար: Անունը «Վարպետի աթոռ» էինք դրել: Նստում էր, ծնոտը ձեռնափայտին հենում ու սկսում զրույցը:

Խնդրում էինք, որ բանաստեղծություններ բերի «Գրական թերթում» տպագրելու:

— Չունեմ, տղանե՛ր, հիմա քիչ եմ գրում, տարին մեկ-երկու հատ:

— Հներից, Վարպե՛տ, հին անտիպներից...

— Թղթերս պիտի նայեմ, անտիպներ կան, ժամանակին չեմ հավանել, չեմ տպել...

Ու մի օր բերեց անտիպներից:

Սկսեցինք կարդալ, իսկ նա մեկ էր նայում սպասումով, հուզված, շիկնած, ճիշտ այն սկսնակի նման, որ առաջին անգամ բանաստեղծություն է տարել խմբագրություն...

Զարմացել էի:

Մի՞թե փառաբանված, փառքի կատարին հասած դասականն էլ իր գործերը, այն էլ հին գործերը, մարդկանց դատաստանին ներկայացնելով, կարող է այդպիսի հուզմունք ապրել:

Պարզվում է, որ կարող է: Եվ եթե չկարողանար, հավանաբար արվեստագետ չլիներ:

Կարդում էինք: 1926 թվին գրված բանաստեղծություն էր.

**Այցելում եմ գերեզմանոցն ամայի,—**
**Մամռոտ քարեր, եղծված գրեր, բեկված հող.**
**Ա՜խ, ընկերներ իմ խանդավառ օրերի,**
**Ես մնացի ձեր անունը հեծեծող:**

— Հրաշալի՜ է, Վարպե՛տ, բայց ինչպե՞ս է, որ մինչև օրս անտիպ է մնացել...

Իսահակյանը հանգիստ շունչ քաշեց, հետո կակազելով ասաց.

— Վերջը, բանաստեղծության վերջը հոգեբանորեն կեղծ էր թվում, ու չէի տպում:

Իսկ վերջն այսպիսին էր.

**Վիշտն է խեղդում հոգիս լքված, տրտմասուգ,**
**Թափառում եմ ուղիներում մեկուսի,—**
**Երգն եմ լսում մանուկների կենսառույգ,**
**Է՜յ, ողջույն քեզ, նոր առավոտ նոր հույսի:**
**Վառ ընձյուղներ արևատենչ, սիրաբաղձ,**
**Որ փայլում եք ցողով, շողով անվրդով,**
**Անցեք կյանքի սափորներով ուսաբարձ,**
**Անցեք ուրախ տվայտանքիս վրայով:**

— Ահա, այդ երկու քառյակն է, որ սրտիս չէին կպչում ու բանաստեղծությունը չէի տպում:

Ներկաներից ոմանք փորձեցին համոզել, որ այդտեղ ոչինչ կեղծ չէ, ամեն ինչ շատ բնական է ու շատ տրամաբանական...

— Բանաստեղծության մեջ շատ տրամաբանականն էլ հենց շատ կասկածելի է... Բայց, որ գտնում եք կեղծ չէ, տպեցեք:

Տպեցինք «Հին տետրակներից» խորագրի տակ:

Հետագայում քանիցս անդրադարձել եմ այդ բանաստեղծությանը. ճշմարի՞տ էին, արդյոք, Իսահակյանի կասկածները... Ու պիտի խոստովանեմ, հիմա էլ չեմ կարողանում կողմնորոշվել:

1955 թվին լույս էր տեսել նրա մեծադիր, շքեղ միհատորյակը: Թևի տակ դրած, մտավ խմբա-

# ԱՐԴԱՐ ՄԱՐԴԸ

*ԱՎԵՏԻՔ ԻՍԱՀԱԿՅԱՆ*

*Եղել է, չի եղել, մի արդար մարդ է եղել: Նա սիրել է արդարությունը, միշտ արդարություն է որոնել, ապրել է միշտ արդար, ազնիվ աշխատանքով:*

*Մի օր այդ մարդը ճանապարհ է գնում, գնում հասնում է մի գետի, տեսնում է գետը մի խնձոր է բերում, հանում է խնձորը ջրից և ուտում է: Ուտելուց հետո մտածում է, որ անարդար գործ կատարեց, կերավ մի խնձոր առանց քրտինք թափելու: Տխրեց, վշտացավ և մտածեց գնալ գտնել այդ խնձորի այգին և նրա տիրոջից թողություն խնդրել կամ վճարել կերած խնձորի գինը:*

*Գետի երկայնքով բարձրանում է, գնում է, տեսնում է մի այգի, մի խնձորենի հասած խնձորներով կախված ջրերի վրա.— «Կա, չկա այս ծառի խնձորն*



Նկ. ԳՐԻԳՈՐ ԹՈՐՈՍՅԱՆԻ

գրություն: Ո՞ւմ համար է բերել արդյոք:

Մոտեցավ, դրեց գրասեղանիս.

— Վահա՜գն, բերել եմ քեզ նվիրեմ:

Ու գնաց:

Բաց արեցի գիրքը: Ջերմ, շատ ջերմ մակագրություն էր արել:

Երբ գիրքը տարա տուն և սկըսեցի թերթել, կարմացա: Սեփական ձեռքով ուղղել էր գրքում նըկատած բոլոր վրիպակները... Մի բան, որ մենք ծուլանում ենք անել:

Հիվանդ էր: Ես ու Հրաչյա Հովհաննիսյանը գնացինք այցելության: Պառկած կարդում էր: Գերմաներեն գիրք էր ձեռքին:

Այդ օրերին մի անեկդոտ էր շրջում քաղաքում:

Իսահակյանը հիվանդ էր, և ժամ առ ժամ լուրեր էին տարածվում, թե մահացել է: Մի ոմն ստուգելու համար այդ լուրերը վերցնում ու զանգ է տալիս ուղիղ Իսահակյանի բնակարանը: Հեռախոսափողը ինքը՝ Իսահակյանն է վերցնում:

— Ո՞վ է լսում...

— Իսահակյանն է...

— Վարպե՛տ, դո՞ւք եք,— կարմացած ու շփոթված հարցնում է այդ «ոմն»-ը:

— Ես եմ...

— Բա ասում էին...

Իսահակյանը գլխի է ընկնում, «թե ինչ էին ասում»:

— Ի՞նչ... Որ մեռել եմ... որտե՞ղ էին ասում...

Ու մարդը տալիս է մի հեղինակավոր հիմնարկի անուն:

— Հա՛,— ասում է Իսահակյանը,— եթե այնտեղ էին ասում, ուրեմն ճիշտ է...

Ուզեցինք ստուգել, իսկապես անեկդո՞տ է, թե՞ եղելություն:

Իսահակյանը ժպտաց.

— Եղել է...

Ու տրամադրությունը բարձրացավ:

Դիպուկ, սրամիտ խոսքը, իր ասած թե ուրիշի, միշտ բավականություն էր պատճառում նրան, բարձրացնում տրամադրությունը:

Տիկին Սոֆիկը առավոտյան շուկա է գնացած եղել, վերադարձել է ու ավտովարորդ Վարդգեսին ասել.

— Վարդգե՛ս,՝ գնա՛ Ավոյին արթնացրու, թող գա նախաճաշի:

Վարդգեսը գնացել է, ձայն է տվել Վարպետին, բայց Վարպետը քնած է եղել... քնած հավերժական քնով... Հանգել էր երազի մեջ... Տեսնես, վերջին անգամ ի՞նչ երազ էր այցելել նրան...

Վարդգեսն այլայլված մտավ խմբագրություն.

— Վարպետը մեռել է...

Դուրս թափվեցինք, կտրեցինք փողոցն ու դիմեցինք Վարպետի տուն:

Անկողնում պառկած էր, քնած էր խոր ու խաղաղ: Դեմքին նույն ավնվական շուքն էր, մաշկի տակ նույն լույսը, որ ցոլում էր մեղմ ու թաքուն:

Թաղումից հետո մի պատմություն տարածվեց, որ չեմ կարող ասել, որքանով է եղելություն, որչափով լեգենդ:

Պատմում էին, որ ամեն երեկո սեւեր հագած տարեց մի կին ծաղիկներ է բերել Վարպետի շիրիմին ու երկա՜ր նստել այնտեղ...

Ու մի առավոտ այդ կնոջը Վարպետի շիրիմի մոտ դրված նստարանին մահացած են գտել:

Ո՞վ է եղել:

Ի՞նչ իմանաս:



*էր»,— մտածում է արդար մարդը և այգի մտնում: Գտնում է այգետիրոջը:*

*— Մի անարդար գործ եմ արել: Խնդրեմ թողություն տաս:*

*— Ի՞նչ ես արել,— հարցնում է այգետերը:*

*— Ցետը մի խնձոր էր տանում, վերցրի կերա, առանց աշխատանքի ապրեցի, քո այգու խնձորն էր, թողություն արա:*

*— Այս այգին մեր երեք եղբոր մեջ բաժանված է. ես միայն իմ մասի համար թողություն եմ տալիս: Մնացածի համար գնա նրանց մոտ:*

*Գնում է երկրորդ եղբոր մոտ. նա էլ է իր մասի համար թողություն տալիս: Գնում է երրորդ եղբոր մոտ:*

*Երրորդը՝ եղբայրներից մեծն է, ալեհեր ծերունի:*

*Արդար մարդը թողություն է խնդրում: Ծերունին թողություն չի տալիս: Արդար մարդը ասում է.*

*— Խնձորիդ մասի համար ինչ գին ուզում ես կըտամ:*

*— Ոչ, պատասխանում է՝ ծերունին,— ես միայն*

*մի պայմանով կարող եմ քեզ թողություն տալ: Մի աղջիկ ունեմ՝ աչքի մեկը կույր, ոտքի մեկը կաղ, ինքն էլ տգեղ ու տարիքն առած, օժիտն էլ մի գուլա (աղբ) զիբիլ: Կառնես՝ թողություն կտամ, չես առնի՝ սևերես մնաս ավուր դատաստանին:*

*Արդար մարդը մտածում է, մտածում է.*

*— Շատ լավ, համաձայն եմ:*

*— Դեհ, որ էդպես է, տանեմ քեզ աղջկաս մոտ, հիմիկվանից քո կնիկն է:*

*Ծերունին տուն է տանում արդար մարդուն, բաց է անում մի դուռ, տղան աչքերին չի հավատում, տեսնում է թավիշե բարձերին նստած մի գեղեցիկ աղջիկ հուրնի հրեղեն, շքեղ հագուստներով, կողքին էլ դրած ոսկով լիքը մի գուլա:*

*— Էս դու, էս էլ քո կինը, էս է նրա օժիտը: Ես աշխարհիս մեջ փնտրում էի մի արդար մարդու, որ հրեղեն աղջիկս նրան տայի, քեզնից ավելի արդար մարդու չեմ տեսել, բարով վայելես, բախտավոր լինեք:*

*1940*

*Երևան, 12 հունվար*

# Կոմիտասի անվան կվարտետը

Երբևէ առիթ ունեցե՞լ եք ունկնդրելու լարային կվարտետին: Երգում ու ներդաշնակ են հնչում երկու ջութակը, ալտն ու թավջութակը: Բեմում չորս երաժիշտները ասես մի շունչ, մի անձ են դարձել... «Կվարտետ» նշանակում է հենց՝ չորսի ընկերակցություն, չորսի միություն: Որոշ իմաստ էլ ունի այս խոսքը: «Կվարտետ» ենք անվանում նաև մի ստեղծագործություն, որը չորս կատարողի համար է գրված: Այլ կերպ ասած՝ կվարտետը կվարտետ է նվագում...

## ԹԵՎԱՎՈՐ ԽՈՍՔԵՐ

### ՀԵՐԱԿԼԵՍԻ ՍԽՐԱԳՈՐԾՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Աստվածների հոր՝ Զևսի և մահկանացու Ալքմենայի որդի Հերակլեսը հույների սիրելի առասպելական հերոսն էր: Եվ իսկապես. պարզամիտ ու խելացի, բարի ու հզոր, ազնվաբարո՝ կյանքի բոլոր պայմաններում, Հերակլեսը մարմնավորում էր հույն ժողովրդի լավագույն հատկությունները:



Հույները նրան վերագրում էին բազում զարմանահրաշ արարքներ: Ավգյան ախոռները մաքրելու սխրանքից բացի, նա գործել է ևս տասնմեկ արտասովոր սխրանք. սպանել է Նեմեյան առյուծին, ոչնչացրել մի զարհուրելի հրեշի՝ լերնեյան Հիդրային, բռնել է անհավոր վարազին և Կերինեի արագավազ եղջերուներին, ոչնչացրել է պղնձակտուց ստիմֆալյղ գիշատիչ թռչուններին, ազնիվ գոտեմարտում ձեռք բերել ամազոնուհիների թագուհի Իպոլիտի գոտին, գտել է հսկա Հերիոնի կովերին հափշտակելու հնարը, բերել է Կրետեի ցուլը և մարդակեր ձիերը, ձեռք է բերել Հեսպերիդների այգու ոսկե խնձորները, սանձել դժոխքի շանը՝ եռագլուխ Ցերբերին:

Զարմանալի՞ է, արդյոք, եթե դրանից հետո, հազարամյակներ շարունակ, մարդիկ «հերակլեսյան սխրագործություն» են անվանում այն գործերը, որոնք գերմարդկային ուժեր են պահանջում, և առհասարակ ամենաուժեղ մարդկանց անվանում են «Հերակլես»: Շատ հնարավոր է, որ մանուկ հասակում կերել եք ձեզ համար ոչ այնքան հաճելի, բայց դրա փոխարեն շատ օգտակար վարսակի շիլա, որ «հերկուլես» (հռոմեացիների արտասանությամբ) անունն ունի: Հիմա հասկանո՞ւմ եք, թե ինչու են այդ անունը տվել:

### ՁԱՅՆ ԲԱՐԲԱՌՈՅ ՀԱՆԱՊԱՏԻ

Աստվածաշնչի ավանդագրույցներից մեկը պատմում է,

Դեռևս 200 տարի առաջ իր անդրանիկ կվարտետային գործերն է ստեղծել Հայդնը՝ կվարտետային երաժշտության նախահայրը: Նրան հետևեցին Մոցարտը, Բեթհովենը, Բրամսը, Չայկովսկին, Շոստակովիչը և շատ ուրիշներ: Հայաստանում կվարտետային արվեստը տարածում ստացավ սովետական իշխանության օրոք: Այդ գործում անգնահատելի ավանդ ունի վաստակավոր կոլեկտիվ, Կոմիտասի անվան կվարտետը:

Հիսուն տարի առաջ էր... Մոսկվայի կոնսերվատորիայի տաղանդավոր ուսանողներ Ավետ Գաբրիելյանը, Լևոն Օհանջանյանը, Միքայել Տերյանը և Սարգիս Ասլամազյանը հիմնեցին հայկական լարային կվարտետ: Առաջին իսկ ելույթները խոստումնալից եղան: Շուտով երիտասարդ կոլեկտիվի արվեստին ծանոթացան Հայաստանի երաժշտասերները, Սովետական Միության կենտրոնական քաղաքների ու հե՛ռավոր շրջանների ունկնդիրները: 1932-ին կվարտետին տրվեց Կոմիտասի անունը, իսկ մի քանի տարի անց կոմիտասցիները շահեցին համամիութենական



*Ձախից՝ Ա. Գաբրիելյան, Է. Թադևոսյան, Դ. Գրիգորյան, Գ. Մարկարյան:*

կվարտետային մրցույթի առաջին մրցանակը: Ավելի ուշ, Կոմիտասի անվան կվարտետի օրինակով ազգային կատարողական կոլեկտիվներ ձևավորվեցին նաև եղբայրական հանրապետություններում:

Կոմիտասցիների փայլուն հաջողությունները ոգևո-

թե հին հրեական մարգարեներից մեկը անապատից կոչ է անում իսրայելցիներին, որ ճանապարհ բացեն աստծո համար՝ տափաստաններում ճանապարհներ գցեն, այնպես անեն, որ լեռները ցած իջնեն, ձորերը լցվեն, իսկ ծուռ ու մուռ անհարթությունները հարթվեն: Սակայն ճգնավոր մարգարեի կանչը մնում է «ձայն բարբառո հանապատի», չի լսվում:

«Ձայն բարբառո հանապատի» արտահայտությունը շատ հին ժամանակներից ձեռք է բերել անպատասխան մնացող հորդորների, անպատասխան մնացող կանչերի նշանակություն: Այդ նշանակությամբ էլ գործածում ենք այժմ:



## ԳՈՐԴՅԱՆ ՀԱՆԳՈՒՅՑ

Պոետական մի առասպել կա: Փռյուգիայի արքա Գորդին Զևսի տաճարին մի կառք է նվիրում: Կառքի առեղին դրված էր եզան լուծ և կապված հոնի ծառի կեղևի այնպիսի բարդ հանգույցով, որ ոչ մի հնարամիտ մարդ չէր կարող քանդել: Քանդելու փորձ անողները անպակաս էին: Պատգամախոսը գուշակել էր, որ նա, ով կքանդի գորդյան հանգույցը՝ կտիրի ողջ աշխարհին:

Եվ ահա Փռյուգիայի մայրաքաղաքը նվաճում է հնագույն զորավարներից մեծագույնը՝ Ալեքսանդր Մակեդոնացին (356—328 մ. թ. ա.): Երիտասարդ զորավարը մտնում է տաճար, նայում է հռչակավոր հանգույցին և հանկարծ սուրը հանում ու մի հարվածով կտրում է հանգույցը: Մենք գորդյան հանգույց ենք կոչում ամեն մի խճճված գործ, դժվար վճռվող հարց: «Կտրել գորդյան հանգույցը», կնշանակի համարձակությամբ, եռանդով, մի հարվածով վճռել բարդ գործը:



րեցին և հայ կոմպոզիտորներին: Գրվեցին տասնյակ կվարտետային գործեր (այդ թվում՝ Հ. Ստեփանյանի, Ա. Այվազյանի, Ա. Սաթյանի, Է. Միրզոյանի, Է. Հովհաննիսյանի): Հենց Կոմիտասի անվան կվարտետն էլ եղավ դրանց առաջին ու անգերազանց կատարողը: Ս. Ասլամազյանը կվարտետի համար մշակեց կոմիտասյան անմահ մեղեդիները. «Գարուն ա», «Չինար ես», «Շուշիկի» և այլն:

Ավելի քան քսան անգամ կվարտետը շրջագայության է մեկնել արտասահմանյան երկրներ՝ Անգլիա, ԳԴՀ, Չեխոսլովակիա, ԱՄՆ, Ճապոնիա և այլուր, ու միշտ բարձր է պահել սովետական կատարողական արվեստը: Մամուլը հիացմունքով նշել է կոմիտասցիների կատարման ազգային շունչը, ջերմությունն ու անմիջականությունը, փայլուն վարպետությունը:

Սովետական արվեստին մատուցած մեծ ծառայությունների համար կվարտետն արժանացել է ՍՍՀՄ և ՀՍՍՀ պետական մրցանակների:

Այսօր, ինչպես և 50 տարի առաջ, կվարտետի առաջին ջութակահարն է ՀՍՍՀ ժողովրդական արտիստ, աչքանչելի երաժիշտ Ավետ Գաբրիելյանը: Տարիներ շարունակ կոլեկտիվում նվագել են տաղանդավոր կատարողներ Նիկիտա Բալաբանյանը, Հենրիկ Թալալյանը, Ռաֆայել Դավթյանը: Ներկայումս կվարտետում ընդգրկված են երիտասարդ կարող ուժեր՝ ջութակահար Էդվարդ Թադևոսյանը, ալտահար Գրիգոր Մարկարյանը և թավջութակահար Դավիթ Գրիգորյանը, որոնք Ավետ Գաբրիելյանի ղեկավարությամբ շարունակում են կվարտետի լավագույն ավանդույթները:

*ԱՐՄԵՆ ԲՈՒԴԱՂՅԱՆ*
*Արվեստագիտության թեկնածու*




# ՊԱՐԳԵՎԱՏՐՈՒՄ Է ԿՈՄԵՐԻՏՄԻՈՒԹՅՈՒՆԸ




Կարմիր կազմ ունի ՀամԼԿԵՄ Կենտկոմի Պատվո գիրքը:

Կոմերիտմիության փառքի տարեգրության այդ էջերում գրվում է դժվար մարտերում ու անձնազոհ աշխատանքով հերոսացած կոմերիտականների, ինչպես և ամբողջ կոլեկտիվների՝ կոմերիտական-երիտասարդական բրիգադների, կոմերիտական կազմակերպությունների անունները: Իսկ կարմիր մաուրային ժապավենով և մեզ բոլորիս սիրելի Իլյիչի կերպարով նշանը տրվում է նրան, ում անունը գրվել է Պատվո գրքում:

Բազմագույն շողերով հնգաթև աստղը՝ ՀամԼԿԵՄ Պատվո նշանը, կոմերիտմիության բարձրագույն պարգևն է: Մեծ պատիվ է այդ նշանին արժանանալը: ՀամԼԿԵՄ Պատվո նշանի առաջին ասպետներից մեկը եղել է Յուրի Ալեքսեևիչ Գագարինը:

Հաջորդը Լենինյան կոմերիտմիության դափնեկրի նշանն է, որ տրվում է արվեստի ու գրականության գործիչներին, երիտասարդ գիտնականներին, ին-

ժեներներին, բանվորներին և կոլտնտեսականներին՝ գյուտերի, հայտնագործությունների, ստեղծագործությունների, բարձրարժեք գործերի համար:

ՀամԼԿԵՄ Կենտկոմի «Մարզական արիություն», «Զինվորական արիություն», «Աշխատանքային արիություն» նշանները տրվում են համարձակության և արիության, մարզական բարձր հաջողությունների, աշխատանքային փառավոր սխրանքների համար:

Հնգամյակի իսկական աջթևայինների, արտադրության առաջավորների, լավագույն երիտասարդ աշխատողների, բամբակագործների, բերքահավաքների «Վարպետ՝ ոսկե ձեռքեր» կոչմանը արժանացածների համար կոմերիտմիությունը նույնպես բարձր և պատվավոր պարգևներ ունի:

Եթե քո կոմերիտական ընկերների կրծքին կտեսնես կարմիր ժապավենով կրծքանշաններ հետևյալ մակագրություններով. «Կոմերիտմիությունում ակտիվ աշխատելու համար», «Պիոներների հետ տարած ակտիվ աշխատանքի համար», իմացիր, որ այդ մարդիկ հուսալի, շնորհալի կոմերիտական և պիոներական խանդավառ ղեկավարներ են:

Ուրիշ շատ նշաններ ունի լենինյան կոմերիտմիությունը, բոլորը հնարավոր չէ մի էջում կամ բացվածքում տեղավորել:

Թեև առայժմ կոմերիտական չես, բայց դու նույնպես կարող ես պարգև ստանալ. ՀամԼԿԵՄ Կենտկոմը հաստատել է «Գերազանց ուսման համար» կրծքանշանը:

Վաստակի՛ր այն:









## ԵՐԹԻ ՄԵԿՆԱՐԿԸ ՏՐՎԱԾ Է

Այս անգամ համամիութենական պիոներական ջոկատների երթը նվիրված է ՍՄԿԿ 25-րդ համագումարին և պետք է անցկացվի «Կոմունիստներից ենք օրինակ վերցնում» նշանաբանով:

Պիոներական դրուժինայի, ջոկատի, օղակի և յուրաքանչյուր պիոների խնդիրն է սովորել լավ ու գերազանց գնահատականներով, ակտիվորեն մասնակցել դպրոցական և արտադպրոցական խմբակների պարապմունքներին, պատանի լենինյանների մեջ սերմանել հոգատարություն ու սրտամոտ վերաբերմունք դեպի աշխատանքը և նոր ու հետաքրքիր գործերով դիմավորել կուսակցության 25-րդ համագումարը:

«Կոմունիստներից ենք օրինակ վերցնում» երթը շարունակում և զարգացնում է այն ամեն լավը, ինչ պիոներական կազմակերպության կողմից ստեղծվել է երթի նախորդ էտապներում:

Երթը անցկացվում է ձեզ արդեն հայտնի երթուղիներով:

Պիոներական օղակում և ջոկատում երթի արդյունքները ամփոփվում են յուրաքանչյուր քառորդի վերջում, իսկ դրուժինայում՝ կիսամյակի:

Առաջին կիսամյակի արդյունքներով յուրաքանչյուր օղակ առանձնացնում է այն պիոներին, որը ուսման մեջ, աշխատանքում, սպորտում լավագույն ցուցանիշների է հասել, որին իրավունք կտրվի ստորագրել ՍՄԿԿ 25-րդ համագումարին ուղղված համամիութենական պիոներական կազմակերպության զեկույցը:

Եթե օղակի ու ջոկատի բոլոր պիոներները առաջադիմում են, ակտիվորեն մասնակցում բոլոր երթուղիներին, հոգատար ու ուշադիր են միմյանց նկատմամբ, դրուժինայի խորհրդի որոշմամբ օղակը պարգևատրվում է «Լավագույն օղակին» հուշադրոշով և շնորհվում է աջթևայինի կոչում:

Ուսումնական տարվա արդյունքներով առաջավոր դրուժինան ստանում է աջթևայինի կոչում և պարգևատրվում է ՀամԼԿԵՄ Կենտկոմի և Վ. Ի. Լենինի անվան համամիութենական պիոներական կազմակերպության կենտրոնական խորհրդի Պատվո ժապավենով, որը ամրացվում է դրուժինայի դրոշին:

Ամենաակտիվ պիոներները՝ ուսման գերազանցիկները, երթի ակտիվ մասնակիցները, ինքնատիպ նախաձեռնությունների հեղինակները կպարգևատրվեն պիոներական կազմակերպության կենտրոնական խորհրդի «Ակտիվ աշխատանքի համար» կրծքանշանով, իսկ նրանց անունները կգրվեն պիոներական կազմակերպության Պատվո գրքում: Այդպիսի պիոներները կդառնան հանրապետական կամ 1976 թվականի օգոստոսին «Արտեկում» անցկացվող համամիութենական պիոներական 7-րդ հավաքի պատգամավորներ:

Երթի անցկացման ժամկետն է. 1975 թվականի սեպտեմբերից մինչև 1976 թվականի օգոստոսը:

# ԱՅԴ ՊԱՏԱՀԵՑ ՔՍԱՆ ՏԱՐԻ ԱՆՑ

*ԱՐՏԱԿ ՈՍԿԱՆՅԱՆ*

*Նկ. ՌԱՖԱՅԵԼ ԲԱԲԱՅԱՆԻ*



Մի անգամ ֆրանսիական ռազմանավերից մեկը գրեթե ջախջախված վիճակում հասավ Մալյորկա նավահանգիստ և հազիվ կարողացավ խարիսխ ձգել: Դա 1808 թվականին էր. ֆրանսիական նավատորմի պարտության տարին: Պարզ է, Մալյորկա հասած ռազմանավը ևս շարքից հանել էին անգլիացիները. ուրիշ ի՞նչ կարող էր լինել. ինքն իրեն հո չէ՞ր կարող խաթարվել:

Երբ նավաստիները ափ իջան, տախտակամած բարձրացան մի շարք նշանավոր ֆրանսիացիներ. դրանց թվում էր նաև Դոմինիկ Ֆրանսուա Արագոն: Պարզվեց, որ այս դեպքում անգլիացիները մեղք չունեն: Նավն ավերել էր կայծակը: Մինչ մյուսները ափսոսանքով դիտում էին այրված կայմը, Արագոն շտապեց դեպի կողմնացույցները և տեսավ այն, ինչ սպասում էր. կողմնացույցների սլաքները կայծակի ազդեցության տակ մագնիսացել էին:

Մեկ տարի անց, Արագոն ականատես եղավ շատ ավելի տարօրինակ երևույթի. դեպի Ալժիր գնացող ֆրանսիական ռազմանավերից մեկը բախվել էր ժայռին և ջախջախվել, բայց ի պարմանս Արագոյի, նրա կողմնացույցների սլաքները ևս մագնիսացած էին: Եթե առաջին նավի կողմնացույցների մագնիսացումը բացատրվում էր կայծակի ազդեցությամբ, ապա ինչո՞վ պետք է բացատրվեր երկրորդինը:

Արագոն չշտապեց եզրակացություն հանել: Նա կազմեց փաստերի մի պատկառելի հավաքածու: Այսպես, նրա ձեռքի տակ էր արդեն անգլիական «Դուվր» ռազմանավի հետ կատարվածի մանրամասն նկարագրությունը: 1748-ի հունվարի 9-ին 47 աստիճան 30 րոպե արևմտյան երկարության կոորդինատներին համապատասխանող վայրում այն ընկավ ամպրոպի մեջ: Կայծակի հարվածը փշրել էր միջակայմն ընդհանրապես, իսկ տախտակամածը՝ մասնավորապես: Նավի կապիտանը՝ Ուեդելը կայծակից հետո փորձել է դուրս գալ ապակողմնորոշման վիճակից և դիմել է կողմնացույցների սլաքների օգնությանը, բայց սլաքները, ինչպես նաև բոլոր պողպատյա և երկաթյա իրերը մագնիսացված են եղել:

Հաջորդ դեպքը, որը դարձյալ կապված է անգլիական նավատորմի հետ, պատահել է այսպես. 1775-ին իրար զուգահեռ, Լոնդոնից դեպի Բարբադոս էին շարժվում երկու նավ: Բերմուդյան կղզիների լայնության վրա փոթորիկ բարձրացավ: Նավերից մեկը կայծակնահար եղավ. կոտրվեց կայմը և պատռվեցին առագաստները, իսկ մյուսը մնաց անվնաս: Փոթորկի հանդարտվելուց հետո, տախտակամած դուրս եկած նավապետը նկատեց, որ տուժած նավը փոխել է իր ուղղությունը և վերադառնում է Լոնդոն: Զարմանալի էր. չէ՞ որ քիչ էր մնացել մինչև Բարբադոս, ջախջախված նավը ինչպե՞ս էր համարձակվել բռնել Անգլիայի ճանապարհը: Շուտով կասկածը փարատվեց. տուժած նավի անձնակազմից մեկը նավակով մոտեցավ և հարցրեց. «Ինչո՞ւ եք փոխել ձեր ուղղությունը»:

Ուրեմն առաջին նավի նավապետին թվում էր, թե իրենց ուղղությունը չի փոխվել: Իսկ ի՞նչ պարզվեց. փոխվել էր կայծակնահար եղած նավի կողմնացույցների սլաքների բևեռայնությունը՝ արևելք ցույց տալու փոխարեն, թեքվել էին դեպի արևմուտք:

Սա դեռ այնքան էլ անհուսալի վիճակ չէր. նավերը երկուսն էին, ընդ որում մեկը անվնաս: Իսկ ահա 1781-ին «Ալբերմալ» նավին, տեղատարափ անձրևի ու փոթորկի պահին, կայծակը հարվածեց. կորուստը մեծ չէր. ճանապարհորդությունը կարելի էր շարունակել: Բայց ի՞նչ. երեք կողմնացույցներից երկուսի սլաքները ցույց էին տալիս մի ուղղություն, մեկը՝ սրանց հակառակ: Ո՞ւր գնալ, սլաքներից որի՞ն հավատալ, մտածում էր նավապետը: Նա երկար սպասեց մինչև ամպերը ցրվեցին և երևաց աստղալից երկինքը ու բևեռային աստղը ցույց տվեց հյուսիսային ուղղությունը: Պարզվեց, որ խաթարվել էին կողմնացույցներից երկուսը, իսկ մեկը մնացել էր անխափան, և նրա սլաքի ցուցմունքը առաջնորդեց նավին:

Արագոյի գրառումներում կարելի է հանդիպել նաև

այլ դեպքերի, որոնք կապ չունեն ծովի և նավի հետ: Նա պատմում է, թե ինչպես մի օր կայծակը շանթեց կոշկակարի տաղավարը և մագնիսացրեց նրա պողպատյա և երկաթյա գործիքները: Կոշկակարը երկար չսպասեց նրանց մագնիսաթափվելուն. պարզապես ազատվեց իր գործիքներից և... վերջ:

Ավելի հետաքրքրական է վերջին դեպքը. մի վաճառական Ամերիկա է տեղափոխելիս եղել մեծ քանակությամբ թանկագին իրեր (ոսկյա, արծաթյա), և կայծակը հալել է դրանց մեծ մասը:



Արագոն հույս ուներ, որ այս դեպքերի ընդհանրացումով կհանգի կայծակի մագնիսական բնույթի պարզաբանմանը: Նա գիտեր, որ նման մոտեցմամբ Ֆրանկլինը պարզեց կայծակի էլեկտրական բնույթը, իսկ ինչո՞ւ ինքը չպարզեր նրա մագնիսական բնույթը. չէ որ փաստերը վկայում էին կայծակի և մագնիսի որոշ հատկությունների ընդհանրությունը: Ի՞նչ էր մնում անել. դասակարգել այդ հատկությունները, ի մի բերել կարևորները և կանգնել նոր հայտնագործության շեմին:

Ավա՜ղ... միշտ չէ, որ փաստերի կուտակումն ու դասակարգումը հանգեցնում են հայտնագործության, ավելի ճիշտ, բոլոր գիտնականները չէ, որ նման ճանապարհով հասնում են իրենց ուզածին:

Փաստերը կուտակեց և դասակարգեց Արագոն, իսկ հայտնագործությունն արեց Կոպենհագենի համալսարանի պրոֆեսոր Հանս Էրստեդը:

Չի կարելի ասել, թե Արագոյին ծանոթ չէր Էրստեդի անունը: Դեռ 1801-ին քսանչորսամյա Էրստեդը եղել էր Փարիզում և ծանոթացել գրեթե բոլոր «անմահներին»: Այդ հասակում արդեն փիլիսոփայության դոկտոր էր. «Պոեզիայի և արձակի սահմանները» աշխատության համար արժանացել էր ոսկե մեդալի: Իհարկե, Փարիզում այդ օրերին Էրստեդը մեծ ընդունելություն չգտավ: Անշուշտ այդպիսի հարգանքի նա չէր էլ սպասում. ուղղակի դուրս էր եկել ճանապարհորդության՝ աչքի առաջ ունենալով Փարիզը: Ի՜նչ իմանար երիտասարդ Էրստեդը, որ տարիներ անց Փարիզը հասուն հրավերով, ինչպես մեծ Վոլտային, իր դռները կբացի նրա դեմ:

Էրստեդի վրա մեծ ազդեցություն գործեցին Վոլտայի փորձերը, նա անտարբեր չէր նաև Նապոլեոնյան մրցանակի նկատմամբ: Այնպես որ բազմակողմանի զարգացած երիտասարդ Էրստեդը հիմքեր և հնարավորություններ ուներ առայժմ թողնելու գրականագիտական հարցերը և «արշավելու» էլեկտրականության վրա:

Էրստեդը արագ կողմնորոշվեց իր նպատակի մեջ և կարճ ճանապարհով հասավ ցանկալի արդյունքին: Նրա պատկերացումները արմատապես տարբերվում էին Արագոյի պատկերացումներից. առաջին հերթին նա ոչ թե փնտրեց մագնիսի և կայծակի կապը, այլ տեսավ էլեկտրական և մագնիսական երևույթների ընդհանրությունը: Էլեկտրականությունը լույս (կայծ) և ձայն (պարպվելիս) է արձակում, նա կարող է տաքացնել այն հաղորդալարը, որի միջով հոսում է, այսինքն՝ ունենում է ջերմային ազդեցություն: Հարց է առաջանում. այն չի՞ կարող ունենալ նաև մագնիսական ազդեցություն, կամ ուղղակի չի՞ կարող ազդել մագնիսի վրա այնպես, ինչպես, ասենք, մեկ ուրիշ մագնիս: Դատողությունների այս հաջորդականությամբ առաջնորդվող Էրստեդը 1820-ի փետրվարի 15-ին, երբ Կոպենհագենի համալսարանի ուսանողներին ցուցադրեց էլեկտրականության ջերմային ազդեցությունը, բնավ էլ այն մտքին չէր, որ բացի հաղորդիչի տաքանալուց ուրիշ որևէ երևույթի պետք է ականատես լինեին նրանք:

Պատահեց անսպասելին. էլեկտրական աղբյուրի բևեռներին միացած հաղորդալարերից ոչ հեռու դրված և փորձի հետ ոչ մի առնչություն չունեցող կողմնացույցի սլաքը հանկարծ շեղվեց: Աչալուրջ ուսանողներից մեկը նկատեց այդ բանը և պրոֆեսորին խնդրեց բացատրել երևույթը:

## ԴՐՈՒԺԻՆԱՆԵՐՈՒՄ ԵՎ ՋՈԿԱՏՆԵՐՈՒՄ



### ԳԻՏԵԼԻՔՆԵՐԻ ՍՏՈՒԳԱՏԵՍ

Երևանի № 48 դպրոցը մեկ ամսից ավելի նախապատրաստվում էր քիմիայի տասնօրյակին: Այդ օրերին դպրոցի բարձր դասարանցիները մրցում էին միմյանց հետ, որպեսզի եզրափակիչ դուրս գալու իրավունք ստանան:

Քիմիայից ստացած գիտելիքների հիանալի ստուգատես հանդիսացավ տասնօրյակի վերջին գեբեկույթը:

10 «բ» դասարանցիները հետաքրքիր փորձ կատարեցին: Սովորական շշերի մեջ մարմարի կտորներ գցեցին ու պղտաթթու լցնելով, շշերի բերանները փակեցին: Քիչ անց խցանները պայթյունով դուրս թռան: Նորից ու նորից էին խցանում շշերը, սակայն մեկ-երկու վայրկյան անց, աղմուկով դուրս էին թռչում դրանք:

Պատճա՞ռը. պղտաթթվի ու մարմարի խառնուրդից մեծ քանակությամբ ածխաթթու գազ է անջատվում, որն էլ դուրս է մղում խցանը:

---

Էրստեդը քարացավ. իրագործվել էր իր տարիների երազանքը. էլեկտրական հոսանքի և մագնիսի անմիջական կապն առկա էր:

Էրստեդը նկարագրեց այդ օրվա փորձի ընթացքը գիտության համար միջազգային լեզու դարձած լատիներենով և առաքեց Ժնև: Մի քանի օր անց Արագոն, որ պատահաբար Ժնևում էր, կարդաց նրա «Պամֆլետը» (այդպես էր հոդվածը վերնագրել Էրստեդը) և պգաց, որ հանելուկը, որի վրա ինքը գլուխ էր կոտրում, լուծված է. եթե կայծակն էլեկտրական երևույթ է (արդեն ապացուցել էր Ֆրանկլինը), ապա նա կարող է ազդել կողմնացույցի սլաքի վրա:

Արագոն կրկնեց Էրստեդի փորձը և համոզվեց, որ «Պամֆլետում» շարադրվածը համապատասխանում է իրականությանը:

Փորձը կրկնվեց նաև բնագետների և բժիշկների միջազգային համագումարում՝ ի ցույց բոլորի: Էրստեդի հայտնագործությունը ցնցեց համագումարի պատգամավորներին: Գիտնականներից մեկը չհամբերեց.

— Պարոնա՛յք, տեղի է ունենում հեղաշրջում:

Էրստեդի հայտնագործությունը միջազգային համբավ բերեց նրան: Բայց չէր լռում նաև քրթմնջոցը. «Պատահական հայտնագործություն է կատարված, ինչ կա որ...»

Իսկապես, առաջին հայացքից թվում է, թե այն պատահական էր: Բայց պատահակա՞ն էր, որ գրականագետ, քիմիկոս Էրստեդը հանկարծ սկսեց զբաղվել ֆիզիկայով: Պատահակա՞ն էր, որ Կոպենհագենի համալսարանում նրան վստահեցին էլեկտրականության դասընթացը: Իհարկե՝ ոչ. Էրստեդը պետք է բացեր բնության գաղտնիքները. այդպես էր կամեցել բնությունն ինքը: Եվ եթե չզբաղվեր ֆիզիկայով, հայտնագործության կհասներ քիմիայում, արվեստում կամ որևէ այլ բնագավառում:

19-րդ դարը բազմակողմանի զարգացած մարդկանց առջև բաց էր անում հազար ու մի ճանապարհ: Այդ ճանապարհներից մեկը, որը տանում էր դեպի էլեկտրականություն, դեռևս նոր էր սկսված: Այդ ուղղությամբ կուտակված գիտելիքների պաշարը այնքան էլ մեծ չէր և չէր պահանջում եղածը յուրացնելու առանձին ճիգեր: Էլեկտրականության փորձեր կատարողի ձեռքի տակ էր ընդամենը վոլտյան սյունը, լեյդենյան շիշը, կողմնացույցը, մագնիսը և հաղորդալարեր: Ահա և բոլորը:

Այսքանից հետո զարմանալ կարելի է Էրստեդի հայտնագործության ուշացման վրա. չէ՞ որ քսան տարի էր, ինչ ֆիզիկոսների փորձասեղանների վրա էր վոլտյան սյունը: Այդ ինչո՞ւ նրանցից և ոչ մեկը չհանգեց այդ հայտնագործությանը: Մի՞թե երբևէ չըստեղծվեց այնպիսի վիճակ, որ վոլտյան սյունով կապված շղթայի կողքին հայտնվեր կողմնացույցը. չէ՞ որ բոլոր լաբորատորիաներում կար այն: Դա պատահեց քսան տարի անց:

Պատահակա՞ն էր, որ ուսանողը նկատեց սլաքի շեղումը:

Այո՛, պատահական էր, բայց օրինաչափ: Եթե նա չտեսներ կամ տեսներ ու ձայն չհաներ, ապա այդ գյուտը վաղ թե ուշ կհայտնագործվեր, գուցե մեկ կամ երկու օր հետո կամ գուցե քսան տարի անց:

Խնդիրն այդ չէ. մեզ համար կարևորն այն է, որ հայտնագործվել է: Եվ հայտնագործել է մի մարդ, որը փնտրում էր ոչ թե կայծակի և մագնիսի ուղղակի կապը, ինչպես Արագոն, այլ մագնիսական և էլեկտրական երևույթների կապն ընդհանրապես, որոնցից երկրորդի և կայծակի ընդհանրությունը ապացուցված էր արդեն, ուրեմն մնում էր այդ զույգին միացնել նաև երրորդը:

Դա հաջողվեց Էրստեդին միայն: Երևի հաջողվեր նաև մեկ ուրիշի, եթե վերջինս մտածեր և գործեր Էրստեդի նման կամ առնվազն լիներ նույնքան բազմակողմանի և համարձակ, որքան Էրստեդը:

Իսկ 10 «գ» դասարանցիները, ի թիվս մի շարք քիմիական խաղերի, պարերի ու փորձերի, մի հետաքրքիր կրույց ներկայացրին:

Թագավորը շատ է ուզում իմանալ, թե իր մարգարիտները կեղծ չե՞ն արդյոք: Խորհրդականներից ոչ մեկը չի կարողանում որոշակի պատասխան տալ: Թագավորը պալատ է կանչում մի ալքիմիկոսի.

— Ինչպե՞ս իմանամ, այս մարգարիտները կեղծ են, թե իսկական:

— Թագավորը ողջ լինի,— ասում է ալքիմիկոսը,— դա շատ հեշտ խնդիր է: Մարգարիտները գցեք քացախաթթվի մեջ, եթե լուծվեցին, ուրեմն իսկական են, եթե ոչ՝ կեղծ են:

Թագավորը, իհարկե, հրաժարվում է այդ փորձից և հարցնում է.

— Իսկ ինչպե՞ս ստուգեմ իմ փիրուզները:

— Նույն եղանակով,— ասում է ալքիմիկոսը,— միայն թե քացախաթթվի փոխարեն ձիթայուղի մեջ գցեք փիրուզները:

— Է՜հ,— կայրացած աղաղակում է թագավորը,— նա եկել է ինձ սնանկացնելու: Քացախաթթվի մեջ գցեք նրան, թող ամբողջովին լուծվի,— հրամայում է նա:

Առաջին փուլում մրցող չորս դասարաններից հաղթող ճանաչվեց 10 «գ»-ն:

Աշխույժ ու հետաքրքիր էին նաև 9-րդ դասարանցիների ներկայացրած համարները: Նրանք կատարում էին աղերի, թթուների և այլ միացությունների վերաբերյալ պարեր: Եվ դրանց միջոցով մեկնաբանում, թե ինչ նյութերի և ինչպիսի նախադրյալների առկայության դեպքում կարող են միանալ էլեմենտները և տալ աղեր, թթուներ և այլ նյութեր:

Երբ հերթը 9 «բ»-ին հասավ, դահլիճում նստած աշակերտներն սկսեցին շշնջալ. «Մարիենց դասարանն է... Մարիենց...» Եվ կանխակալ դրական կարծիքը, որ ստեղծվել էր այդ շշուկներից, քիչ անց հաստատվեց Մարի Մարինոսյանի կողմից: Դասարանը բեմահարթակին շարվելուց հետո, նա մի քայլ առաջացավ և արտիստական վարպետությամբ սկսեց ներկայացնել իրենց համարները, բացատրել, թե ինչի արդյունք է քիմիական այս կամ այն նյութը, հրաշալի կատարեց «Աղերի պարը», ծույլերի վերաբերյալ երգիծական երգերը: Ամեն ինչ կատարյալ էր, և եթե նրանց դասարանը երկրորդ փուլում առաջին տեղը գրավեց, ապա այդ հաղթանակի կզալի մասը նրա գիտելիքների և ընդունակությունների արդյունքն էր:

Նրանց ելույթից հետո մթնոլորտը դեռ շիկացած էր: 9 «գ» դասարանցիների ելույթը թեև վատ չէր, բայց չտպավորվեց: Իսկ դրան հակառակ 9 «դ» դասարանը դեռ բեմահարթակին չէր հասել, որ դահլիճը սկսեց վանկարկել...

— Հո՜-վի՛կ, Հո՜-վի՛կ...

Քանի դեռ կոլեկտիվ փորձեր ու խաղեր էին անցկացնում, Հովիկ Հայրապետյանը առանձնապես աչքի չէր ընկնում: Բայց, երբ սկսվեցին երգիծական համարները, Հովիկը գերազանցեց ոչ միայն իր դասարանցիներին, այլև եզրափակիչի բոլոր մասնակիցներին: Հումորով ներկայացվեցին Երևանի մետաքսի կոմբինատ կատարած իրենց էքսկուրսիան, քիմիական պոլիմերների վերաբերյալ կրույցն ու «դասախոսությունը»:

Թեև այդ ամենը շատ զվարճալի էր պատմում Հովիկը և նրա խոսքը հաճախակի ընդհատվում էր ծափերով ու համընդհանուր ծիծաղով, այդ չխանգարեց, որ դահլիճում նստածները հստակ պատկերացում կազմեն մետաքսի արտադրության և որոշ պոլիմերների ստացման ու կիրառական նշանակության մասին:

Դժվար պարտականություն էին հանձն առել Միսաք Մանուշյանի անվան դպրոցի բարձր դասարանցիները: Քիմիայի տասնօրյակն անցավ մեծ հաջողությամբ, հարստացրեց աշակերտների գիտելիքները, շատերին օգնեց մասնագիտություն ընտրելու հարցում: Այդ ամենը մեծ ջանքեր էին պահանջել դպրոցի դիրեկտոր Է. Հայրապետյանից, քիմիայի խմբակի ղեկավար Ֆ. Աղաջանյանից և տասնօրյակին մասնակցող դասարանների ղեկավարներից: Այդ մասին ասացին նաև ժյուրիի անդամները, որոնք քաղաքի տարբեր դպրոցների քիմիայի ուսուցիչներ էին, Սովետական շրջանի ժողկրթբաժնի, մամուլի ներկայացուցիչները, ծնողները և մանկավարժները:

Հաղթող դասարանները հուշանվերներ ստացան, իսկ հետաքրքիր միջոցառման կազմակերպիչները պարգևատրվեցին դպրոցի, ժողկրթբաժնի և ուսուցիչների կատարելագործման ինստիտուտի դիպլոմներով ու պատվոգրերով:

ՎԱՀԱՆ ՄԵԽԱԿՅԱՆ

---

## ԺՊԻՏՆԵՐ

Մորակից ջուր է կաթկթում: Սաթենիկն ասում է.
— Մորակը լալիս է:

Նայում է սենյակի դռան ապակու մեջ ու ժպտում.
— Էստեղ մի քիչ ծաղիկ կա:

— Սաթենի՛կ, անունդ ո՞նց է,— հարցնում է տատիկը:
— Լավ է,— պատասխանում է Սաթենիկը:




# ԿՈՄՈԴՈՅԻ ՎԻՇԱՊԸ

Երկրորդ համաշխարհային պատերազմի ավարտից քիչ առաջ, ճապոնական մի փոքրիկ ռազմանավ ականահարվեց ինդոնեզյան արշիպելագին պատկանող կղզիների մոտերքը: Մի քանի նավաստի փրկություն գտան Կոմոդո կղզում: Ենթադրվում է, որ բացի նավաստի Սիմրունից, մյուսները արտակարգ ողբերգական մահ են ունեցել: Ահա թե ինչ է պատմում միակ վկան: «Ես մենակ էի մնացել. չհաշված գայլաշանը: Նույնիսկ չէի էլ զգացել, թե որտեղ և երբ են կորել ընկերներս: Ուժասպառ էի: Մոտս մնացած լուցկու վերջին հատիկով խարույկ վառեցի, որն անհրաժեշտ էր գիշեր-ցերեկ վառ պահել՝ մոծակներից և հատկապես ջունգլիի գազաններից պաշտպանվելու համար: Մի առավոտ խարույկը բոցավառելու համար ցած իջա պատսպարանիցս՝ մի խրճիթ, որը կառուցել էի ծովափնյա արմավենու կատարին: Հետս ցած իջավ նաև ոչ մի րոպե ինձ չլքող շունը: Նա վզին մեխապատ օղ ուներ և կաշվեշղթա, որից ամուր բռնել էի: Ընդամենը մի քանի մետր էինք հեռացել խրճիթից, երբ հանկարծ փարթամ խոտերի միջից, կարծես գետնի տակից, հայտնըվեց մի ահռելի հրեշ: Կարմիր ու երկար լեզուն, երկու մորակի նման կիսված, նա ուղղեց մեզ: Այն զգացումն ունեցա, որ, ինչպես պատմվում է մանկական հեքիաթներում, գազանը բերանից կրակ է արձակում: Շանը քաշեցի դեպի ինձ, բայց նա պոկվեց ու առաջ թռավ այնպիսի հաչոցով, ինչպիսին երբեք չէի լսել: Հրեշը բարձրացրեց գլուխը, երախը լայն բացեց, հետո... կայծակնային մի շարժում, և շունը անհետացավ: Մի շնչով հրեշը կուլ էր տվել նրան: Մի քանի կրակոց արձակելով գազանի վրա՝ խելագարի նման վազեցի դեպի խրճիթս: Անմիջապես քանդեցի այն, փայտերից լաստ սարքեցի և իջեցրի ջրի մեջ...»

Նախքան այս ֆանտաստիկ պատմության հայտնվելը պարբերականների էջերում, հայտնի էր, որ արտասովոր բուսականությամբ ծածկված Կոմոդո կղզում ապրում է մողեսների վարանի կոչված ցեղը, որին բնիկները անվանում են «Կոմոդոյի վիշապ», անշուշտ նկատի ունենալով նախապատմական շրջանի կենդանական աշխարհը հիշեցնող նրանց վիթխարի չափերը: Բնականաբար, այս իրադարձությունները գայթակղիչ էին գիտնականների և լրագրողների համար: Նրանք չուշացան կղզի այցելել: Քանի դեռ գիտության մարդիկ ընդհանուր եզրակացությունների չէին հանգել կենդանու կառուցվածքի, բազմացման և սովորությունների վերաբերյալ, լրագրողները և լուսանկարիչները արժեքավոր գունանկարներով ու հոդվածներով ծանոթացրին մարդկությանը ժամանակակից հրեշներին:

Մողեսների վարանի ցեղը ապրում է տաք ծովերի բազմաթիվ կղզիներում, բայց այնպիսի հսկաներ, ինչպիսիք կան Կոմոդո կղզում, եզակի են: Այստեղ հայտնաբերվել են նմուշներ, որոնց երկարությունը 4 մետր է, իսկ քաշը՝ ավելի քան 100 կգ: Այնուամենայնիվ մի բան հաստատ է. այդ մողեսները մսակեր են և մեծ աղետ են կղզում ապրող եղնիկների ու վարազների համար: Մյուս կողմից չպետք է աչքաթող անել այն հանգամանքը, որ սնվելով բուսականությանը վնասող մեծաքանակ մժեղներով, թիթեռներով ու միջատներով, այս սողունները, առանձնապես նրանց ձագերը, օգտակար գործ են կատարում:

Ռումիներենից թարգմ.
Տ. ԴԱՐԲԻՆՅԱՆԸ



## ՀՈՎԱՆՈՑԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԸ

Հովանոց կրելու սովորությունը գալիս է շատ հին ժամանակներից: Հին Եգիպտոսի և Նինվեի քանդակագործները փարավոններին միշտ պատկերել են հովանոցներով, հռոմեացիները, հույները և Արևելքի բոլոր ժողովուրդները օգտագործել են հովանոց, բայց նրանց հովանոցները տարբեր են մերից, ձևով նրանք նման են ամպհովանու, որը հիմա էլ կրում են կաթոլիկական ծեսերի ժամանակ: Քանի որ հնում հովանոցները շատ ծանր էին, վերնախավի կանանց և բարձրաստիճան պաշտոնյաների հովանոցները տանում էին ստրուկները: Հովանոցը միայն արևից պաշտպանվելու համար չէր, այլև ցուցադրում էր տիրոջ հարստության աստիճանը:

Չինաստանում իրավունք ուներ հովանոց օգտագործել միայն թագավորի ընտանիքը, Իսպանիայում հովանոցներից կարող էին օգտվել հարուստները, միջին դասին և հասարակ ժողովրդին թույլատրվում էր հովանոց կրել միայն լայն եզրերով գլխարկի հետ:

Հնդկաստանում հովանոց օգտագործում էին բոլորը: Բիրմայի թագավորը ուներ 24 հովանոց և այդ տեսակետից ոչնչով չէր տարբերվի իր ենթականերից:

Տարբերությունը լոկ այն էր, որ արքայի հովանոցները սպիտակ մետաքսից էին: Այդ գույնի հովանոց ոչ ոք իրավունք չուներ օգտագործելու:

## ՄԻԱԿԸ ԷՇԵՐԻ ՄԵՋ

Եթե Մուֆտին չլիներ էշ և կարողանար կարդալ թերթերում տպագրված հոդվածները ծխախոտի վնասակարության մասին, վաղուց կհրաժարվեր իր հոբբիից: Բայց Մուֆտին մոլի ծխող է և ուշադրություն չի դարձնում իր առողջությանը:

Վնասվում է միայն Մուֆտիի տերը՝ թոշակառու Վոլտեր Մայերը, որն ապրում է արևմտագերմանական Վատվացլեր քաղաքում: Նա հաճախ է դժգոհում.

— Մուֆտին այնքան է վարժվել ծխելուն, որ եթե մի օր չի ստանում սիգար, հրաժարվում է սայլը քաշել: Հաճախ նա պառկում է փողոցի մեջտեղը և չի շարժվում տեղից՝ մինչև չի ստանում իր սիգարը: Եվ ցավալին այն է, որ վերջին ժամանակներս Մուֆտին հրաժարվում է էժանագին տեսակից և չի ծխում սիգար, որը էժան է 50 պֆենինգից:

Տիրոջը մնում է միայն մի մխիթարանք, որ իր Մուֆտին միակ ծխողն է բոլոր էշերի մեջ:

Լույս է տեսնում 1923 թվականից

№ 10 հոկտեմբեր 1975 թ.



# ՊԻՈՆԵՐ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐՈՒ ՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը՝*

*ՆԿ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ*

Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ., ԽՈՍՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԹՈՐՈՍՅԱՆ Ժ., ԽԱՆՁՅԱՆ Գր., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՍԱՐԳՍՅԱՆ Լ. (պատասխանատու քարտուղար), ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր), ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս.

«Пионер» на армянском языке. Орган ЦК ЛКСМ Армении и республиканского совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375200, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

Հասցեն՝ 375200, Երևան — 15, Կարմիր բանակի փողոց, № 15
Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96, 56—37—90

ՎՖ 06261: Պատվեր 1983: Տպաքանակ՝ 79 200: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 6/X 1975 թ.:

ՀՍՍՀ Մինիստրների սովետի հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ, Երևան — 9, Տերյան փ. № 91

ԻՆԴԵՔՍ 77806

| | | | | | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| | « | 11 | 23 | 28 | 29 | 13 | | 15 | 10 | 28 | 21 |
| 23 | 28 | 12 | 18 | 15 | 10 | 16 | 12 | 15 | 10 | | 19 |
| 15 | | 13 | 16 | 24 | 12 | 28 | 16 | | 22 | | 24 |
| | 28 | 17 | 14 | 17 | 20 | | 23 | 29 | 16 | 10 | 25 |
| 26 | 28 | 27 | 10 | 16 | 16 | 12 | 28 | 19 | 15 | » | : |



| | 1 | 2 |
|---|---|---|
| 0 | Ա | Բ |
| 1 | Գ | Դ |
| 2 | Ե | Է |
| 3 | Ը | Ի |
| 4 | Լ | Կ |
| 5 | Մ | Յ |
| 6 | Ն | Ճ |
| 7 | Ո | Ջ |
| 8 | Տ | Ր |
| 9 | Ու | Ք |

՝



# ԳԱՂՏՆԱԳԻՐ—ԹՎԱԲԱՆԱԿԱՆ ԽՆԴԻՐ

Ավետիք Իսահակյան-100.

ԳԱՂՏՆԱԳԻՐ — Գաղտնագրի լուծման բանալին գծագրի ձախ կողմում գրված տառերն են և նրանց վերևում ու ձախ կողմում նշված թվերը: Օգտվելով դրանցից՝ երկանիշ թվերը փոխարինեք համապատասխան տառերով: Ճիշտ կատարելով՝ կկարդաք Վարպետի նշանավոր ասույթը գրքի մասին:

ԹՎԱԲԱՆԱԿԱՆ ԽՆԴԻՐ—365-ից մինչև 385 թվերը դասավորեք գծագրի վանդակներում այնպես, որ յուրաքանչյուր մեծ շրջանագծի ներսում գտնվող հինգ թվերի գումարը, ինչպես նաև փոքր շրջանակներով նշված ու շտրիխված շեղանկյունները պարունակող վանդակների հինգ թվերի գումարը կազմի Ավ. Իսահակյանի ծննդյան տարեթիվը՝ 1875:

Այժմ նույն վանդակներում դասավորեք 385-ից մինչև 405 թվերը այնպես, որ նշված թվերի գումարը կազմի հոբելյանական տարեթիվը՝ 1975: Իսկ վերջում՝ 10-ից մինչև 30 թվերը տեղադրեք վանդակներում այնպես, որ վերը նշված վանդակների թվերի գումարը կազմի հոբելյանական թիվը՝ 100:

*Կազմեց ՌԱՖԱՅԵԼ ՀԱԿՈԲՅԱՆԸ*